Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՕԳՈՍՏՈՍ
8
1989

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



### ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 42—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1989 թվականի հուլիսի 25-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենում: Պլենումին հրավիրվել էին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և վերստուգիչ հանձնաժողովի կազմի մեջ չմտնող Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինների վարիչները, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարները, մինիստրներն ու պետական կոմիտեների նախագահները, ինչպես նաև ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային խորհուրդների գործկոմների նախագահները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ապարատի, Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի, ՀԼԿԵՄ Կենտկոմի, հանրապետության պետպլանի, ժողովրդական վերահսկողության կոմիտեի և պետագրոարդի պատասխանատու աշխատողներ, գյուղատնտեսական բուհերի, գիտական հիմնարկների ղեկավարներ, կոլտնտեսությունների, խորհտնտեսությունների, գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ ու ղեկավարներ, վարձակալողներ, մասսայական ինֆորմացիայի միջոցների ներկայացուցիչներ:

Պլենումը քննարկեց հանրապետության կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների խնդիրները արդի ժամանակամիջոցում կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման և բնակչության պարենավորման արմատական բարելավման ուղղությամբ:

Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Գուգարքի շրջկոմի առաջին քարտուղար Վ. Ս. Խաչատրյանը, ՀԿԿ Բաղրամյանի շրջկոմի առաջին քարտուղար Հ. Վ. Մինասյանը, Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, հանրապետության պետագրոարդի նախագահ Վ. Մ. Մովսիսյանը, ժողովրդական դեպուտատների Կալինինոյի շրջխորհրդի գործկոմի նախագահ Ժ. Հ. Բարոյանը, Շամշադինի շրջանի Արծվաբերդ գյուղի կոլտնտեսության ծխախոտագործ Է. Ի. Ավալյանը, ՀԿԿ Ղուկասյանի շրջկոմի առաջին քարտուղար Ա. Դ. Գոմցյանը, «Հայգազարդ» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր Գ. Ա. Թաքարյանը, ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար Հ. Դ. Դանիելյանը, Նաիրիի շրջանի «Նաիրի» ագրոֆիրմայի գլխավոր դիրեկտոր Ց. Մ. Խաչատրյանը, ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար Հ. Մ. Առաքելյանը, Հայկոոպի վարչության նախագահ Մ. Հ. Մուրադյանը, ՀԿԿ Արտաշատի շրջկոմի առաջին քարտուղար Ջ. Գ. Գևորգյանը, Ստեփանավանի վարձակալական կապալով աշխատող խոզաբու-

ծական տնտեսության դիրեկտոր Ա. Ս. Նազարյանը, Հայկական ԽՍՀ հացամթերքների մինիստր Ռ. Թ. Շահբազյանը, ՀԿԿ Մասիսի շրջկոմի առաջին քարտուղար Ա. Վ. Հարությունյանը, ՀԿԿ Երևանի 26 կոմիսարների անվան շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Խ. Միրոյանը:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը Մ. Ս. Մինասբեկյանին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից:

Փակ (գաղտնի) քվեարկությամբ պլենումը Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար Գ. Ե. Ասատրյանին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ:

Պլենումը Ս. Ս. Մայիլյանին հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պետական-իրավական բաժնի վարիչ:

Պլենումը Զ. Կ. Կուրբանովին ազատեց «Սովետ էրմենիստանի» թերթի խմբագրի պարտականություններից՝ առողջական վիճակի պատճառով՝ անձնական դիմումի համաձայն, Մ. Ա. Մստոյանին՝ «Ռյա թազա» թերթի խմբագրի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Պլենումը Ի. Ս. Մամեդովին հաստատեց «Սովետ էրմենիստանի» թերթի խմբագիր, Տ. Ա. Դավրեշյանին՝ «Ռյա թազա» թերթի խմբագիր:

Պլենումը բավարարեց Ս. Ս. Ավետիսյանի խնդրանքը՝ իրեն Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պետական-իրավական քաղաքականության հարցերի հանձնաժողովի նախագահի պարտականություններից ազատելու մասին: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պետական-իրավական քաղաքականության հարցերի հանձնաժողովի նախագահ ընտրվեց Հայկական ԽՍՀ գերագույն դատարանի նախագահ Ա. Ա. Գևորգյանը:

Սրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

---

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ, ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՊԱՐԵՆԱՎՈՐՄԱՆ ԱՐՄԱՏԱԿԱՆ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի պլենումում, 1989 թ. հուլիսի 25-ին*

Ընկերներ: Արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականության մշակման անհրաժեշտությունը բխում է բնակչության ոչ բավարար պարենավորման իրադրությունից, մի բան, որն ստեղծում է սոցիալական լարվածություն, հարուցում մարդկանց արդարացի դժգոհությունը: Երկրում չի բավականացնում գյուղատնտեսական արտադրանքը, պետությունը հարկադրված է դրա որոշ մասը գնել արտասահմանից: Գաղտնիք չէ, որ չնայած հսկայական հատկացումներին ու նյութատեխնիկական ռեսուրսներին, որոնք տրամադրվում են ագրոարդյունաբերական համալիրի զարգացմանը և հողերի մելիորացման խոշոր ծրագրերի իրականացմանը, ագրարային հատվածում ստեղծված արտադրական պոտենցիալից պատշաճ հատույց չի ստացվում:

Մեր էկոնոմիկայի բարձրարդյունավետ ագրարային հատվածի ստեղծումը աներևակայելի է առանց խորհրդային հասարակության կյանքի արմատական նորացման, դեմոկրատացման, տնտեսավարման նոր գաղափարախոսության: Մշակված ագրարային ծրագիրը պետք է արմատական քաղաքական, տնտեսական, սոցիալական ու կուլտուրական փոփոխություններ ապահովի գյուղի զարգացման մեջ, ամենասեղմ ժամկետներում լուծի մեր հասարակության կենսագործունեության հիմնական ոլորտներից մեկում կուտակված պրոբլեմները, լայն ասպարեզ բացի գյուղի մարդկանց աշխատանքային ու սոցիալական ակտիվության համար, վերածնի գյուղացուն որպես հողի իրական տիրոջ:

Հրապարակայնությունը բացահայտեց, որ գյուղատնտեսության վերելքի մասին բարձրագոչ խոսքերի քողի ներքո տասնամյակներ շարունակ փաստորեն խաթարվել են լենինյան ագրարային քաղաքականությունը, Վ. Ի. Լենինի գաղափարները սոցիալիզմի՝ իբրև քաղաքակիրթ կոոպերատորների հասարակարգի մասին: Կոլեկտիվացման ու բռնությունների ժամանակաշրջանում թույլ տրված կործանարար սխալները հսկայական, անդառնալի վնաս հասցրին: Դեմոկրատական սկզբունքների աղավաղումը խախտեց ավանդական, դարերով ձևավորված գյուղացիական կենսակերպը, գյուղացուն կտրեց հողից, նրա մեջ խարխլեց տնտեսատիրոջ զգացումը, թուլացրեց շահագրգռվածությունն իր աշխատանքի վերջնական արդյունքների նկատմամբ: Ագրարային հատվածում արմատացան արտատնտեսական հարկադրման մե-

թողները, բացառվեց կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների ամեն մի տնտեսական ինքնուրույնություն, սահմանափակվեցին կոոպերացիայի ձևերը, բոլոր դեմոկրատական սկզբունքները: Ձևավորվեց կառավարման վարչահրամայական համակարգը:

Այս ամենի մասին սկզբունքային ու շիտակ ձևով ասվեց ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի մարտյան պլենումում, որը քննարկեց գյուղի ամբողջ ագրոարդյունաբերական համալիրի զարգացման կարևորագույն պրոբլեմները, պրոբլեմներ, որոնք մեծ նշանակություն ունեն մարդկանց բարեկեցության բարձրացման, նրանց կենսապայմանների բարելավման գործում:

ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ, պլենումի որոշումներում երկրի էկոնոմիկայի ագրարային հատվածի խոր վերլուծության հիման վրա ձևակերպված են արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականության գլխավոր ուղղությունները:

Ընկերներ: Խիստ լուրջ է մեր հանրապետության ագրոարդյունաբերական համալիրում տիրող իրադրությունը: Հայկական գյուղին, որ ամբողջ երկրի հետ անցել է գյուղատնտեսական արտադրության կազմավորման բոլոր փուլերը, հատուկ են նույն այն թերությունները և պրոբլեմները, որոնք նշվեցին Կենտկոմի մարտյան պլենումում:

Հանրապետության գյուղատնտեսության մեջ տարիներ շարունակ գործում էր ծախսումային մեխանիզմը, տնտեսավարման մի համակարգ, որը կողմնորոշված էր ոչ թե որակի ու խնայողության, այլ համախառն ցուցանիշների: Մեքենայացման մակարդակով, աշխատանքի ու կենցաղի պայմաններով գյուղը ավելի ու ավելի էր հետ մնում քաղաքից: Դա հանգեցրեց գյուղի բնակչության արտահոսքի ուժեղացման: Արդյունաբերական արտադրության զարգացման արագ տեմպերը, ուրբանիզացման պրոցեսների արագացումը, գյուղի սոցիալական ոլորտի երկարամյա բարձիթողի վիճակը հանգեցրին 124 գյուղի ամայացման, 54-ն էլ ներկայումս գտնվում է վերանալու եզրին: Միայն վերջին ութ տարում քաղաքային բնակչության աճը յոթ անգամ գերազանցել է գյուղականը:

Հանրապետության շատ գյուղերում բնակարանային, կուլտուր-կենցաղային պայմանները, բուժսպասարկումը, ծառայությունների, սպասարկման ոլորտը գտնվում են անմխիթար վիճակում:

Այսօր մենք պետք է քննարկենք ու մշակենք գյուղի և ընդհանուր առմամբ ագրոարդյունաբերական համալիրի կյանքում արմատական փոփոխությունների հասնելու ուղիները: Մեր առջև խնդիր է դրված վերացնել սոցիալական լարվածությունը, որը պայմանավորված է նաև սննդամթերքի մշտական պակասով: Պարենային ճգնաժամից շուտափույթ դուրս գալը ոչ միայն տնտեսական, այլև, անշուշտ, քաղաքական լուրջ պրոբլեմ է:

Ստեղծված իրավիճակից մենք պետք է մի գլխավոր հետևություն անենք. ոչ մի սոցիալական վերափոխություն, ինչ բարձր կարգախոսներով էլ որ նա քողարկվի, չի կարող իրագործվել առանց ժողովրդի շահերը հաշվի առնելու և առանց նրա անմիջական մասնակցության: Դեմքով շրջվել դեպի գյուղը, գյուղացուն վերադարձնել իր իրավունքները, վերականգնել սոցիալիստական տնտեսավարման լենինյան սկզբունքները՝ այսպիսին պետք է լինի մեր քաղաքական գիծը:

Ընկերներ: Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն նոր ագրարային քաղաքականությունը համարում է մեր ժողովրդի վերածնության համազգային ծրագրի կարևորագույն բաղկացուցիչ մասը:

1988 թվականի դեկտեմբերի 7-ի երկրաշարժը, որը բնաջնջեց ամբողջ քաղաքներ ու գյուղեր, խլեց տասնյակ հազարավոր մարդկանց կյանքեր, ճգնաժամային վիճակ է ստեղծել նաև հանրապետության ագրարային հատվածում:

Ագրոարդյունաբերական համալիրին հասցվել է 2 միլիարդ ռուբլու վնաս, այդ թվում գյուղական բնակչության անհատական տնտեսություններին՝ 560 միլիոն ռուբլու: Աղետի գոտու տուժած 342 բնակավայրերից 58-ը ավերվել է հիմնովին: Գյուղում անհատական բնակարանային ֆոնդի կորուստները կազմել են մեկ և կես միլիոն քառակուսի մետր: Խախտվել է յուրաքանչյուր երրորդ տնտեսության, վերամշակող արդյունաբերության և շինարարական ինդուստրիայի ձեռնարկություններից շատերի նորմալ գործունեությունը: Շարքից դուրս է եկել մելիորատիվ համակարգերի ավելի քան 40 տոկոսը: Ավերվել կամ վնասվել է ավելի քան 2,5 հազար սոցիալական, կուլտուրական ու կենցաղային օբյեկտ:



Այս ամենը ծայրաստիճան վատթարացրել է բնակչության պարենավորումը: Չէ որ հանրապետության 16 շրջաններում, որոնք սաստիկ տուժել են երկրաշարժից, արտադրվում էր հացահատիկային կուլտուրաների ու կարտոֆիլի ընդհանուր ծավալի 50 տոկոսը, մսի 30 և կաթի 42 տոկոսը:

Հիշատակելով այս թվերը, ուզում եմ մեկ անգամ ևս ընդգծել մեր անելիքների ամբողջ մասշտաբայնությունը, տարերային աղետի հետևանքների շուտափույթ վերացման, մարդկանց ապրելու և աշխատելու նորմալ պայմանների ստեղծման գործում ժողովրդի հանդեպ մեր պատասխանատվության ամբողջ մեծությունը: Եվ այստեղ չի կարելի մոռանալ այն հսկայական նյութական օգնությունը և բարոյական աջակցությունը, որ հանրապետությանը ցույց են տալիս ԽՄԿԿ Կենտկոմը և խորհրդային կառավարությունը, միութենական հանրապետությունները:

Նախատեսված է գյուղական բնակավայրերում կառուցել մեկ միլիոն 650 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, այդ թվում ավելի քան 20 հազարը՝ առանձնատնային տիպի, լիովին վերականգնել ագրոարդյունաբերական համալիրի արտադրական կարողությունները:

Այդ աշխատանքների կատարման համար երկրի մարզերից, երկրամասերից, ինքնավար և միութենական հանրապետություններից տուժած գյուղեր է եկել 110 շինարարական ջոկատ: Գործի են դրվել մոտ 3 հազար շինարարական մեքենա ու մեխանիզմ: Նախագծման աշխատանքներում ներգրավված է 140 նախագծային ինստիտուտ:

Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում միութենական հանրապետությունների պետագրոարդի շինարարական կազմակերպությունները կատարել են 172,5 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանք կամ՝ տարեկան պլանի 35 տոկոսը: Շահագործման է հանձնվել շուրջ 72 հազար քառակուսի մետր բնակտարածություն: Կուսակցական, խորհրդային, տնտեսական մարմինների առաջնահերթ խնդիրն է առավելագույն ուշադրություն նվիրել գյուղում ընթացող վերականգնման աշխատանքներին:

Ընկերներ: Մեզ հարկավոր է նոր, արմատական մոտեցում ունենալ ժամանակակից ագրարային քաղաքականության իրականացման գործում, մոտեցում, որը հաշվի առներ այսօրվա միտումները և իրողությունները:

Ինչպիսին է այսօրվա իրական վիճակը հանրապետության կոլտնտեսություններում ու պետական տնտեսություններում: Ինչո՞ւ մեզ չի հաջողվում արմատապես բարելավել բնակչության պարենավորումը: Այս մասին ամենայն սկզբունքայնությամբ խոսվեց ՀԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում, որն ի հայտ բերեց օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի մի շարք պատճառներ:

Անշուշտ, շատ բան բացատրվում է հանրապետության սակավահողությամբ ու սակավաջրությամբ, հողերի ցածր բերրիությամբ, գյուղական բնակչության տեսակարար կշռի կտրուկ նվազմամբ և քաղաքային բնակչության համապատասխան ավելացմամբ, անձնական օժանդակ տնտեսությունների դերի թուլացմամբ, ինչպես նաև գյուղի սոցիալական զարգացման գործում թույլ տրված լուրջ վրիպումներով: Սակայն այս ամենը ոչ մի կերպ չի արդարացնում հանրապետության գյուղատնտեսության ներկա վիճակը: Այստեղ շատ բան կախված է գործի նկատմամբ վերաբերմունքից, ղեկավարության բանիմացությունից, տնտեսությունը նոր մոտեցմամբ վարելու կարողությունից, ստեղծված տնտեսական պոտենցիալը լիարժեք օգտագործելուց, գյուղատնտեսական աշխատանքի խելամիտ կազմակերպումից ու խթանումից:

Չվիճարկելով այն փաստը, որ գյուղն այսօր էլ մեծ քանակությամբ տեխնիկայի, պարարտանյութերի, շինանյութի, կապիտալ ներդրումների կարիք ունի, միամտություն կլիներ ենթադրել, թե դրանց առկայությունը ինքնին կլուծի բոլոր պրոբլեմները:

Պարզության համար հիշատակեմ մի քանի թիվ: Վերջին 20 տարում հանրապետության կոլտնտեսությունների, միջտնտեսային կազմակերպությունների և պետական տնտեսությունների հիմնական արտադրական ֆոնդերը ավելացել են 5 անգամ, պարարտանյութերի մատակարարումը՝ ավելի քան 3, աշխատանքի վարձատրությունը՝ 2,5 անգամ: Միևնույն ժամանակ արտադրանքի աճը կազմել է ընդամենը 76 տոկոս, ֆոնդահատույցը նվազել է գրեթե 3 անգամ: Այս միտումները բնորոշ են հանրապետության բոլոր գյուղատնտեսական գոտիներին:

Ճյուղի ցածր արդյունավետության գլխավոր պատճառը ռեսուրսների սահմանափակությունը չէ: Այն ավելի խոր արմատներ ունի: Ժամանակն է արդեն գի-

տակցելու, որ առանց գյուղում տնտեսական հարաբերությունների ու սոցիալական պայմանների արմատական փոփոխման չեն գործի ոչ տեխնիկան, ոչ էլ կապիտալ ներդրումները: Հենց տնտեսական վերափոխումներն են, որ պետք է հաղթահարեն գյուղի աշխատավորների օտարումը սեփականությունից, որն առայժմ ձևականորեն է պատկանում նրան:

Տնտեսավարման նոր համակարգի հնարավորությունների առավելագույն օգտագործման, կոոպերացման, վարձակալության միջոցով կոլտնտեսությունների ու խորհրդային տնտեսությունների ունեցած հսկայական պոտենցիալի բացահայտումը մեզ համար դառնում է հրատապ խնդիր:

Երկար ժամանակ արտադրության կազմակերպման և հատկապես նյութական խթանման գործում տնտեսական հարաբերությունների առաջնայնության անտեսումը հանգեցրեց հանրապետության տնտեսությունների մեծ մասի անմխիթար վիճակին: Դրա հետևանքով ամենուրեք աճեց արտադրանքի ինքնարժեքը, իջավ շահութաբերությունը:

Եթե հաշվի առնենք, որ վերջին տարիներին բարձրացել են գյուղատնտեսական շատ մթերքների գնման գները, իսկ ցածր շահութաբեր և վնասով աշխատող տնտեսությունների համար սահմանված է հավելավճար, ապա ակնհայտ կդառնա, որ մենք փաստորեն տեղաշարժ չունենք: Սկսած 1983 թվականից՝ հանրապետության տըն-տեսությունները տարեկան միջին հաշվով ստացել են 117 միլիոն ռուբլի որպես հավելավճար և գնման գների տարբերություն, իսկ տնտեսությունների շահույթը վերջին տարիներին հազիվ հասել է 100 միլիոն ռուբլու: Ահա և ձեզ ծախսումային էկոնոմիկա, որը հանգեցնում է գյուղատնտեսության համար բացասական հետևանքների:

Համակարգի էքստենսիվ վարման հետևանքով մեծացել է ֆինանսական լարվածությունը: Բանկերից ստացված վարկերի գծով ժամկետանց պարտքերը 1989 թվականի սկզբին կազմել էին 88 միլիոն, վարկային պարտքերը՝ 367 միլիոն, իսկ սեփական շրջանառու միջոցների պակասը՝ 197 միլիոն ռուբլի: Ստեղծված վիճակը խիստ դժվարացնում է հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի անցումը ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման: Այսօր հանրապետության յուրաքանչյուր հինգերորդ տնտեսությունն է միայն պատրաստ նոր տնտեսավարման պայմաններում աշխատելու, ընդ որում՝ վնասով աշխատող կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների թիվը աճում է: Միայն անցյալ տարի դրանց թիվը կազմեց 213՝ 1987 թվականի 163-ի դիմաց:

Տնտեսությունների ֆինանսական դրության առողջացման նպատակով ամեն տարի ինչպես կառավարությունը, այնպես էլ պետագրոարդը ընդունում և վերանայում են բազմաթիվ որոշումներ: Սակայն տեղերում առայժմ էական բարելավում չի նկատվում:

Այսպես այլևս շարունակել չի կարելի: Հողը չպետք է վնասաբեր լինի:

Վաղուց ժամանակն է, որ պետագրոարդը, պետպլանը, ֆինանսների մինիստրությունը, ագրոարդբանկը քննության առնեն վնասով աշխատող յուրաքանչյուր տնտեսությունում տիրող իրադրությունը: Եթե այդտեղ ձեռնտու են ընտանեկան կապալը, վարձակալությունը, ֆերմերային տիպի գյուղացիական տնտեսության ստեղծումը, ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները կամ արտադրության կազմակերպման կոոպերատիվ այլ ձևեր, ուրեմն պետք է վճռականորեն անցնել դրանց: Մեր խնդիրն է առաջիկա երկու տարում բացառել յուրաքանչյուր տնտեսության վնասաբերությունը: Հարկավոր է վճռականորեն արմատախիլ անել խնամառուական տրամադրությունները, ավելի համարձակ խրախուսել նրանց, ովքեր կարող են և ուզում են աշխատել:

Գյուղատնտեսական արտադրության ցածր շահութաբերությունը բացատրվում է նաև նրանով, որ տնտեսագիտորեն հիմնավորված չեն գործող գնման գները, անկատար է գնագոյացման համակարգը: Ինչպես գիտեք, խնդիր է դրված 1990 թվականի հունվարից սահմանել հիմնական գյուղատնտեսական մթերքների գնման նոր գներ, կհաստատվի նաև ճյուղերի միջև ապրանքաշրջանառության գնային համարժեքության սկզբունքը:

Հանրապետության կառավարությունը, հաշվի առնելով յուրաքանչյուր ռեգիոնի բնատնտեսական պայմանները, պետք է ռեալ առաջարկություններ նախապատրաստի անասնապահական մթերքների գնման գների տերիտորիալ տարբերակում մըտցնելու համար: Ընդ որում, մթերք արտադրողների հետ համատեղ անհրաժեշտ է



վերանայել թե գյուղատնտեսական արտադրության կառուցվածքը, թե պետական պատվերների համակարգը:

Ասվածից մի հետևություն կարելի է անել: Պետք է ուժ ներարկել ագրոհամալիրի ֆինանսական մարմնի ջլատված մկաններին: Չվախենալ փշրել իրենց դարն ապրած ստերեոտիպները, դրա համար ավելի համարձակորեն օգտագործել տնտեսական ռեֆորմի ընձեռած բոլոր հնարավորությունները:

Այսօր կյանքը մեզ թելադրում է ընդունել արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի առկայությունը և դրանց վրա հենված տնտեսավարման նոր եղանակների անհրաժեշտությունը: Կուսակցության ագրարային քաղաքականությունը, ինչպես դա բխում է ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումներից, կհենվի սեփականության պետական, կոլտնտեսային-կոոպերատիվ, անձնական և խառը ձևերի վրա: Կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների, արդյունաբերական, շինարարական և այլ ձեռնարկությունների ագրոարտադրամասերի, օժանդակ արտադրությունների համար կստեղծվեն տնտեսավարման հավասար հնարավորություններ: Դա պետք է բազմազան դարձնի արտադրության ձևերը, մտցնի մրցակցության տարր, դրականորեն անդրադառնա ինչպես թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, այնպես էլ դրա ինքնարժեքի իջեցման վրա:

Մեզանում արդեն առաջին քայլերն են արվում այդ ուղղությամբ: Հանրապետությունում գործում են երեք գիտաարտադրական միավորում, երեք ագրոկոմբինատ, չորս ագրոֆիրմա, երկու միասնացված արտադրական միավորում, մեկ գիտաարտադրական համակարգ:

Դրա հետ մեկտեղ, նոր կազմավորումները դանդաղ են առաջադիմում, թույլ են օգտագործում իրենց լայն իրավունքները, իսկական ինքնուրույնության չեն հասնում: Ագրոկոմբինատների ու ֆիրմաների հետ փոխհարաբերություններ հաստատելիս ֆինանսական, պլանային ու մյուս մարմինները միշտ չէ, որ պահպանում են այդ տընտեսական կազմավորումների համար սահմանված դրույթները: Էջմիածնի շրջանի «Ջվարթնոց» ագրոկոմբինատում, օրինակ, միութենական ու հանրապետական ֆոնդերին միս, կաթ և այլ մթերքներ մատակարարելու պետական պատվերները սահմանված են այնպիսի չափերով, որ փաստորեն սեփական առևտրի համար մթերք չի մնում: Սա, բնականաբար, առաջ է բերում կոմբինատի աշխատավորական կոլեկտիվի արդարացի դժգոհությունը:

Գյուղի աշխատավորներին հուզում են անասնապահական մթերքների արտադրության խթանման գործում տեղ գտած թերությունները: Հաճախ տեղերում արդարացի հարց են տալիս. եթե մենք կայուն կերպով գերակատարում ենք մթերումների պլանը, ինչո՞ւ չի բարելավվում մեր շրջանին կաթնամթերքի ու մսամթերքի մատակարարումը: Մինչդեռ երկրի մի շարք ռեգիոններում վաղուց արդեն արտապլանային արտադրանքի մի մասը սահմանված կարգով հատկացվում է տեղական կարիքների բավարարմանը:

Թերևս հանրապետությունում ստեղծված բարդ պայմաններում հնարավոր չէ միանգամից և ամբողջությամբ իրականացնել այս սկզբունքը: Սակայն պարզ է, որ արտապլանային արտադրանքի բաշխման ներկայիս կարգը չի բխում արտադրողի շահերից և չի խթանում արտադրության զարգացումը:

Պետական պատվերի անհրաժեշտությունն այսօր ակնհայտ է, բայց հարկավոր է նաև հոգ տանել, որպեսզի այն չդառնա մթերումների ճնշումային մեթոդների քողարկված ձև: Այստեղ իր դերն է կոչված խաղալու պայմանագրային եղանակը, որը հիմնված լինի արտադրողի և մթերող կազմակերպության երկուստեք շահագրգռվածության վրա:

Գյուղում իրականացվող արմատական տնտեսական ռեֆորմի առանցքը տընտհաշվարկային հարաբերությունների ամենուրեք և լայնորեն ներդրումն է, անցումը աշխատանքի ու վարձատրության նոր ձևերին, իրական ինքնակառավարմանը:

Սիսիանի, Ղուկասյանի, Ախուրյանի, Եղեգնաձորի, Ստեփանավանի և այլ շըրջանների շատ տնտեսություններում աշխատանքի կազմակերպման կապալային, ինչպես նաև կոոպերատիվ ձևերի զարգացման շնորհիվ բարելավվել են արտադրական ու տնտեսական ցուցանիշները: Վերցնենք, օրինակ, Նաիրիի շրջանի «Նաիրի» ագրոֆիրման (գլխավոր դիրեկտոր՝ Յ. Խաչատրյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ռ. Սերոբյան): Այստեղ վարձակալական հարաբերություններն ընդգրկել են բոլոր աշխատողներին: 1988 թվականին հեկտարից ստացվել է 135 ցենտներ պտուղ, մեկ կովի կաթնատվությունը հասել է 4618 կիլոգրամի: Նախորդ տարվա համեմատու-

թյամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 60 տոկոսով, աշխատանքի վարձատրությունը՝ 24 տոկոսով, շահութաբերությունը կազմել է 53 տոկոս:

Այսպիսի օրինակները քիչ չեն: Տնտեսական ռեֆորմը, վարձակալությունն ու տնտհաշվարկը կարճ ժամկետում տալիս են ակնբախ արդյունք:

Եթե հավատալու լինենք վիճակագրական տվյալներին, ապա հանրապետությունում տարեցտարի աճում է կապալային տնտհաշվարկային կոլեկտիվների թիվը, ընդլայնվում են վարձակալական հարաբերությունները և արտադրության կազմակերպման կոոպերատիվ ձևերը: Սակայն պրակտիկան այլ բան է վկայում. կապալ ու վարձակալություն կարծես թե կան, բայց աշխատանքի արտադրողականության էական աճ փաստորեն չի նկատվում, էլ չենք խոսում արտադրանքի ինքնարժեքի իջեցման մասին:

Ո՞րն է պատճառը: Պատասխանը պարզ է. շատ տնտհաշվարկային կոլեկտիվներ, եթե ոչ դրանց մեծամասնությունը, պարզապես գոյություն ունեն թղթի վրա: Ժամանակն է արդեն պատշաճ կարգուկանոն հաստատելու նաև պաշտոնական հաշվետվությունների մեջ, որպեսզի մոլորության մեջ չգցենք ոչ մեզ, ոչ ուրիշներին: Ժամանակն է, որ պետագրոարդի համապատասխան ստորաբաժանումները, տեղական կուսակցական, խորհրդային մարմինները գործնական պայքար ծավալեն աչքակապության հասնող ձևականության դեմ: Այստեղ սկզբունքային դիրքորոշում պետք է ունենա նաև հանրապետության պետական վիճակագրական կոմիտեն:

Պակաս կարևոր հարց չէ վարձակալական հարաբերությունների զարգացման համար բարենպաստ պայմանների ստեղծումը:

Վարձակալական հարաբերություններ արմատավորելիս տեղ են գտնում կապալի և վարձակալության պայմանագրերի կոպիտ խախտումներ: Եվ զարմանալի չէ, որ այդ հարաբերությունները շատ դժվար են հաստատվում գյուղում:

Շամշադինի, Մարտունու, Կրասնոսելսկի և մի շարք այլ շրջանների որոշ տնտեսությունների ու միջին օղակի ղեկավարներ ամեն տեսակի խոչընդոտներ են հարուցում գյուղացուն, խանգարում են նրան վարձակալելու հողը, ֆերմաները, անասունները: Հարկավոր է վճռականորեն պայքարել կամայականության փաստերի դեմ, նման ղեկավարներին կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկել: Վարձակալության լինել-չլինելու հարցը չպետք է լուծեն այն անձինք, որոնց այդ հարաբերությունները պարզապես ավելորդ են դարձնում կառավարման մեխանիզմում:

Դա այսօր գլխավոր խոչընդոտն է կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների շրջանակներում վարձակալության ու վարձակալական հարաբերությունների տարածման ճանապարհին: Եվ արդեն բավական չէ խոչընդոտը միայն տեսնելը և այն արձանագրելը: Անհրաժեշտ է հուսալիորեն պաշտպանել ամեն մի վարձակալողի իրավունքը՝ տնտեսավարել ինքնուրույնաբար: Հողին հարկավոր է իսկական և ոչ թե ձևական տեր: Հողին հարկավոր է բարձր արդյունքներով շահագրգռված կոնկրետ մարդ:

Եթե հավատանք վիճակագրությանը, ապա այժմ լիովին վարձակալական կապալի է անցել տնտեսությունների մոտ մեկ քառորդը: Իհարկե, այդ գործում չպետք է ընկնել ծայրահեղության մեջ և ամբողջ աշխատանքը հանգեցնել հերթական համատարած կամպանիայի: Մեր խնդիրն է՝ լայնորեն օգտագործելով առաջավոր փորձի նվաճումները, մարդկանց խորապես համոզել և ակնբախորեն ցույց տալ աշխատանքի կազմակերպման այդ ձևի առավելությունները: Կարծում եմ, վատ չէր լինի մի մեծ խումբ վարձակալողների ու ֆերմերների ստաժավորման գործուղել երկրի առաջավոր տնտեսություններ, իսկ նրանց մի մասն էլ, գուցե թե նաև՝ արտասահման: Մենք այժմ իրավունք չունենք հետ մնալ, ժամանակ կորցնել պարապ խոսակցությունների վրա. հարկավոր է արմատավորել վարձակալությունը, ներդնել ֆերմերական աշխատանքը, մշակել տնտեսավարման մեր հայկական մոդելը: Այն ժամանակ, միգուցե, մեր հանրապետություն ևս գան մարդիկ փորձ ընդօրինակելու:

Ընկերներ: Երբ որևէ բանի համար պատասխանատու են բոլորը, ապա, որպես կանոն, չգիտես ումից ինչ պահանջել: Հողը մեզանում պատկանում է ժողովրդին: Միևնույն ժամանակ հանրահայտ է, որ կոլեկտիվացումից հետո ժողովրդի այդ սեփականությունը մնացել է առանց տիրոջ: Վարչահրամայական մեթոդներով մենք փորձել ենք հողից քամել առավելագույնը, բայց ոչ մի կերպ չենք լուծել գլխավոր հարցը. ով է հողի իսկական տերը, ով է պատասխանատու նրա համար:

Եկել է ժամանակը լրջորեն խորամուխ լինելու այս հարցերի մեջ:

Գյուղացիական տնտեսությունների դերի աճին զուգընթաց ամբողջ հասակով



հառնում է այդ տնտեսությունների մասին օրենք ընդունելու անհրաժեշտությունը: Միայն իրավական հիմք ստեղծելու միջոցով մենք կարող ենք գյուղացուն վերադարձնել հողին: Մեր կարծիքով, հողը պետք է հանձնվի գյուղացուն անժամկետ օգտագործման պայմանով, ժառանգման իրավունքով և անվճար: Հողը չպետք է ենթակա լինի ազատ վաճառքի և վարձով տրվելու: Նոր օրենքը պետք է սահմանի հողամասի առավելագույն չափերը, մթերքի արտադրության և իրացման ներփակ շրջափուլի հնարավորությունը, պետության կողմից տրվող հավելավճարի ծավալները, հարկման չափերը և կարգը, իհարկե՝ նրանց գործունեության առաջին տարիների համապատասխան՝ արտոնություններով հանդերձ:

Ի դեպ, պլենումի մասնակիցները կարող են ունենալ նաև հանդիպական առաջարկություններ. եկեք ուրեմն խորհրդակցենք, միասին որոշենք: Մենք մտադիր ենք հասարակության կյանքի այդ բացառիկ կարևոր հարցը համաժողովրդական քննարկման դնել, հետագայում այն քննության առնելով Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նստաշրջանում:

Կկամենայի ձեր քննարկմանը ներկայացնել մեկ կարևոր հարց ևս. ինչպե՞ս վարվենք պետագրոարդի հետ: Մենք համոզվել ենք, որ նա ի վիճակի չէ այլևս գործել այն տեսքով, ինչպիսին որ կա: Այդ համակարգը, ընդգրկելով գյուղատնտեսական արտադրության հիմնական ճյուղերը, կարճ ժամանակամիջոցում վերածվել է նոր բյուրոկրատական գերատեսչության: Եվ այսօր հանրապետության պետագրոարդի ապարատը, նրա տեղական մարմիններն առաջվա պես շարունակում են թելադրել, թե ինչ և որքան պետք է արտադրվի, ում պիտի վաճառել, երբ ձեռնամուխ լինել ցանքսին, բերքահավաքին: Թե ինչի է դա հանգեցրել, մենք արդեն գիտենք:

Իսկ ո՞վ պետք է պատասխան տա հանրապետության ագրոարդյունաբերական համալիրում ստեղծված իրադրության համար: Ես դիմում եմ ընկ. Վ. Մովսիսյանին և ընկ. Թ. Դիլանյանին: Ամենայն որոշակիությամբ պետք է ասել, որ ՀԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում ձեր հասցեին եղած քննադատությունից պատշաճ հետևություններ չեն արվել: Մենք չենք տեսնում կոնկրետ գործեր, շոշափելի արդյունքներ: Հանրապետության ագրոարդյունաբերական համալիրը բացահայտորեն տեղապտույտ է տալիս:

Ինչ վերաբերում է պետագրոարդի ապագային, ապա այդ առթիվ կան մի շարք առաջարկներ, սակայն վերջնական եզրակացության կկամենայինք հանգել պլենումի մասնակիցների նկատառումները լսելուց հետո: Հարկավոր է ընդունել այնպիսի որոշում, որը առավելագույնս նպաստեր ագրոարդյունաբերական համալիրի զարգացմանը:

Հարկ է հիմնովին վերակազմել ագրոարդյունաբերական համալիրի կառավարման համակարգը նաև շրջանի մակարդակով: Թերևս դիմենք շրջանային ագրոարդյունաբերական միավորումների լուծարքման: Նման մոտեցումը թելադրվում է կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների, գյուղացիական և անձնական օժանդակ տնտեսությունների օպերատիվ-տնտեսական գործունեությանն ամեն կարգի միջամտություն բացառելու անհրաժեշտությամբ:

Դրանց փոխարեն շրջանների տնտեսությունների ու ձեռնարկությունների ներկայացուցիչները կարող են դեմոկրատական հիմունքներով խորհուրդներ կազմել համագործակցելու նպատակով: Խորհուրդը և նրա ապարատը վարչական ֆունկցիաներով չեն օժտվում: Տնտեսությունները և ձեռնարկություններն իրավունք ունեն խիստ կամավոր և փոխշահավետ հիմունքներով ստեղծել նորոգման, տեխնիկական սպասարկման, շինարարության, արտադրանքի մշակման, պահպանման, փոխադրման ու վաճառահանման տնտհաշվարկային կազմավորումներ:

Կառավարման այս կամ այն ձևի ընտրության հարցում պետք է բացառել ամեն կարգի կողմնակի ճնշում: Կարևոր է կազմավորել կառավարման այնպիսի մարմիններ, որոնց նպատակը լինի հողագործների շահերի պաշտպանությունը, արտադրական, սոցիալական հարցերի լուծմանը ցուցաբերվող օգնությունը: Այստեղ պետք է աշխատեն միայն նրանք, ովքեր պատրաստ են համընթաց քայլել գյուղացու հետ և ոչ թե լոզունգներով ընթանալ առջևից կամ քշել-խթանել թիկունքից:

Կարծում եմ, բոլորին պետք է պարզ լինի. մեզ սպասում է ոչ թե պարզապես հերթական մի վերակազմավորում, նոր հիմնարկների ցուցանակների ձևական փոփոխություն, այլ կառավարման համակարգի արմատական դեմոկրատացում:

Ընկերներ: ՀԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում խիստ,

սկզբունքային գնահատական տրվեց պարենային պրոբլեմի լուծման գործում բնակչության անձնական տնտեսությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների օժանդակ տնտեսությունների, կոլեկտիվ այգեգործության ու բանջարաբուծության ընկերությունների դերի քաղաքական թյուրըմբռնմանը: Սակայն այսօր հարկ է կրկին հավաստել, որ այդ տնտեսություններում գյուղատնտեսական մթերքներ արտադրելու հնարավորությունները դարձյալ լրիվ չեն օգտագործվում:

Ներկայումս հանրապետությունում գյուղացիական մեկ տնտեսությանը բաժին է ընկնում ընդամենը 1350 քառակուսի մետր հողատարածություն, որը ամենացածր ցուցանիշն է երկրում: Բացի այդ, տասնյակ հազարավոր ընտանիքներ հողակտորների սահմանափակության կամ էլ առհասարակ դրանց բացակայության պատճառով զուրկ են նորմալ տնտեսություն վարելու հնարավորությունից:

Մինչդեռ օժանդակ տնտեսություններում, որոնք կազմում են հանրապետության գյուղատնտեսական հողատարածությունների ընդհանուր տարածքի ընդամենը 3 տոկոսը, պահվում է անասունների ամբողջ գլխաքանակի 28 տոկոսը, արտադրվում է համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի 35 տոկոսը: Ահա այսպիսին է թվաբանությունը: Մի՞թե թույլատրելի է, որ գյուղատնտեսական արտադրության առավել արդյունավետ հատվածը՝ անձնական տնտեսությունը, գտնվի խորթ զավակի վիճակում:

Անձնական հատվածը, տվյալ դեպքում, ամենևին էլ անձնական գործ չէ, այլ պետական, համաժողովրդական գործ է: Սակայն մենք չենք օգտագործում առկա հնարավորությունները: Միգուցե հենց այստեղ պետք է որոնել բնակչությունից մսի գնումների կտրուկ նվազման պատճառը Նոյեմբերյանի, Թումանյանի, Աշտարակի շրջաններում: Հարկ է նշել, որ հանրապետության գյուղական ընտանիքների կեսից ավելին անասուն չի պահում:

Գյուղական բնակչության գերակշիռ մեծամասնությունը փաստորեն դարձել է ոչ թե արտադրող, այլ սպառող: Այս վիճակը մենք նորմալ չենք համարում, այնպես մենք երբեք չենք կերակրի հանրապետության բնակչությանը: Գյուղում ապրող յուրաքանչյուր ոք պետք է անասուն պահի: Թե ղեկավարը, թե շարքային գյուղացին՝ սա է այսօր ժամանակի հրամայականը:

Մեծ պոտենցիալ են պարունակում կոլեկտիվ այգեգործությունը և բանջարաբուծությունը: Գործի հմուտ կազմակերպման դեպքում գյուղատնտեսական արտադրության այս ոլորտը կարող է էական նեցուկ դառնալ պարենային պրոբլեմի լուծմանը:

Այստեղ ևս մենք բախվում ենք տեղական կուսակցական ու խորհրդային մարմինների անտարբերությանը և չեզոքությանը: Հատկացված 13 հազար հեկտար հողից բաշխվել է ընդամենը մեկ քառորդը: Գյուղատնտեսական մթերք է ստացվում միայն 1,5 հազար հեկտարից: Աղետի գոտում հատկացված հողերի միայն մեկ տոկոսն է յուրացվել կոլեկտիվ այգեգործության համար: Հանրապետությունում գործող 910 այգեգործական ընկերությունների 75 տոկոսը ապահովված չէ խմելու ջրով, կեսը՝ ոռոգման ջրով, միայն 15 տոկոսն է էլեկտրաէներգիա ստանում:

Այս ասպարեզում տիրող բարձիթողի վիճակն առանձնապես հստակորեն դրսևորվեց երկրաշարժից հետո, երբ խիստ սրվեցին բնակչության բնակարանային և պարենավորման պրոբլեմները: Իսկ չէ՞ որ եթե մենք ժամանակին լուծեինք կոլեկտիվ այգեգործության զարգացման հարցերը, ապա այդ պրոբլեմներն այսքան սուր չէին դառնա:

Մենք ամենայն խստությամբ պատասխան կպահանջենք պետագրոարդի, մինիստրությունների ու գերատեսչությունների, տեղական կուսակցական, խորհրդային ու տնտեսական մարմինների ղեկավարներից՝ այս գործում ցուցաբերվող անպատասխանատվության համար:

Ուզում եմ պլենումի ամբիոնից նախազգուշացնել Երևանի քաղգործկոմի նախագահ ընկ. Է. Ավագյանին, Լենինականի քաղգործկոմի նախագահ ընկ. Կ. Համբարձումյանին, Կիրովականի քաղգործկոմի նախագահի տեղակալ ընկ. Է. Խաչատրյանին, Գուգարքի (ընկ. Գ. Նազարյան), Արթիկի (ընկ. Ռ. Մովսիսյան), Կալինինոյի (ընկ. Ժ. Բարոյան), Նոյեմբերյանի (ընկ. Ս. Կարագյոզյան), Ստեփանավանի (ընկ. Գ. Կիրակոսյան) շրջխորհուրդների գործկոմների նախագահներին՝ աշխատանքի այդ տեղամասում ներկա վիճակի համար իրենց անձնական պատասխանատվության մասին:

Հանրապետության ձեռնարկությունների ու հիմնարկների աշխատավորական



կոլեկտիվների պարենավորման բարելավման գործում պակաս կարևոր դեր չեն խաղում օժանդակ տնտեսությունները: Սակայն այստեղ էլ նորը դժվարությամբ է ուղի հարթում: Այդ տնտեսությունների թիվը դանդաղ է աճում, դրանք աշխատում են ծուլորեն, հաճախ վնասով, տարիներով չեն ավելացնում արտադրության ծավալները:

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների ընդամենը 28 տոկոսն ունի օժանդակ տնտեսություն: Ծայրաստիճան ցածր են դրանց արտադրական ցուցանիշները: Ջերմոցներում միջին հաշվով մեկ քառակուսի մետրից ստանում են 3 կիլոգրամից էլ պակաս բանջարեղեն, ընդ որում յուրաքանչյուր տասներորդ տնտեսությունում բերքատվությունը կես կիլոգրամ անգամ չի կազմում:

Մեզ համար սուր պրոբլեմ է մնում բնակչության աճեցրած արտադրանքի մթերման, փոխադրման, վերամշակման, պահպանման և իրացման կազմակերպումը: Պետագրոարդը (մինիստր՝ ընկ. Ն. Այվազյան), Հայկոոպը (նախագահ՝ ընկ. Մ. Մուրադյան) պետք է անհետաձգելի միջոցներ ձեռնարկեն անհրաժեշտ պայմաններ ու կարողություններ ստեղծելու համար:

Հայկոոպը ծայրաստիճան թույլ է օգտագործում իր հնարավորությունները տեղական ռեսուրսների և ներմուծման հաշվին բնակչության պարենավորման գործը բարելավելու համար: Փաստորեն այն վերածվել է գյուղական առևտրի մինիստրության, աչքաթող անելով իր մթերողական գործունեությունը:

Հանրապետության կառավարությունը պետք է Հայկոոպին կոնկրետ օգնի բոլոր գյուղերում մթերման կետեր, յուրաքանչյուր շրջանում մսի, բանջարեղենի, մրգի վերամշակման օբյեկտներ կազմակերպելու գործում: Բնակչության աճեցրած սննդամթերքը պետք է անկորուստ մթերվի, վերամշակվի և իրացվի տվյալ շրջանում ու հանրապետությունում:

Մինչև հնգամյակի վերջը հարկավոր է լիովին լուծել այգեգործներին, օժանդակ տնտեսություններին հողամասերի հատկացման հետ կապված պրոբլեմները և համակողմանի օգնություն ցույց տալ նրանց:

Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհուրդը, պետագրոարդը, կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինները պետք է այդ հարցերը դիտեն որպես կարևորագույն սոցիալ-տնտեսական ու քաղաքական խնդիր՝ նպատակամղված բնակչության սննդամթերքի պահանջմունքի բավարարմանը:

Հարկ է առանձնակի ուշադրություն նվիրել հանրային արտադրության հետ բնակչության օժանդակ տնտեսությունների կոոպերացիայի զարգացմանը պայմանագրային հիմունքներով: Այսօր կոնկրետ խնդիր է դրվում. տասներեքերորդ հնգամյակում կրկնապատկել անձնական օժանդակ տնտեսություններում արտադրվող մթերքների ծավալը: Կենտկոմը խստորեն կվերահսկի դրա կատարման ընթացքը:

Կարևորագույն նշանակություն ունեն հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի վերամշակող ճյուղերի հետագա զարգացումը, վերակառուցումը և տեխնիկական վերազինումը: Այստեղ իրավիճակը դանդաղ է բարելավվում, թույլ են տրվում մեծ կորուստներ:

Տարիներ ի վեր այդ հարցերի առթիվ ընդունվել են բազում որոշումներ, բայց շոշափելի փոփոխություններ տեղի չեն ունեցել: Տարեկան նորոգվում է ֆիզիկապես և բարոյապես հնացած արտադրական ֆոնդերի միայն 2—3 տոկոսը, աշխատանքը մեքենայացված է ընդամենը 40—60 տոկոսով:

Վերջին 15—20 տարվա ընթացքում մսեղենի-կաթնեղենի, պահածոների, հացաթխման արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ, հանքային ջրերի գործարաններ փաստորեն աշխատում են առանց վերակառուցման ու նորացման: Շատ առումներով ձախողվել է առաջադրանքների կատարումը: Շինարարական մինիստրություններից ու գերատեսչություններից ոչ մեկն այդ օբյեկտներում չի կատարել շինմոնտաժային աշխատանքների պլանը, և այդ պատճառով անցած երեք տարում պակաս են իրացվել շուրջ 41 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ:

Նույն այդ տարիներին կաթի արդյունաբերության մեջ կարողությունների գործարկման առաջադրանքները կատարվել են 25, պահածոների արդյունաբերության մեջ՝ 38 տոկոսով, պտուղբանջարեղենի պահպանման օբյեկտների գծով՝ կիսով չափ: Միայն Հայկոոպի համակարգում չեն գործարկվել 20 միլիոն ռուբլու հիմնական արտադրական ֆոնդեր:

Պետագրոարդի, պետշինի, Հայկոոպի, տեղական կուսակցական ու խորհրդային մարմինների նման անպատասխանատու վերաբերմունքին պետք է վերջ դրվի: Իրա-

վիճակի բարդության և այսպես կոչված օբյեկտիվ հանգամանքների ամեն մի վկայակոչում մենք կդիտենք որպես խուսանավում, իսկ եթե կուզեք՝ ղեկավարելու անընդունակություն: Մինիստրների խորհուրդը պետք է խստորեն հաշիվ պահանջի նրանցից, ովքեր կձախողեն այդ կարևոր հարցի լուծումը:

Առաջիկա տարիներին սննդի և վերամշակման արդյունաբերության գլխավոր խնդիրն է տեղական ռեսուրսների առավելագույն օգտագործման, արտադրության մեջ անթափոն ու սակավաթափոն տեխնոլոգիաների կիրառման շնորհիվ մինչև 1995 թվականը պարենամթերքի ռեսուրսները ավելացնել 194 միլիոն ռուբլով, որը կկազմի դրանց ընդհանուր հավելաճի 20 տոկոսը:

Լուրջ թերություններ կան թողարկվող արտադրանքի տեսականու ընդլայնման և որակի բարելավման գործում:

Կենսական պրոբլեմ է հանրապետության հանքային ջրերի մեծ պաշարների արդյունավետ օգտագործումը: Ներկայումս հանքային ջրերի գործարանները մեկ տարվա ընթացքում օգտագործում են առկա ռեսուրսների միայն 7 օրվա հոսքը: Մնացած ջուրը պարզապես կորչում է: Պետագրոարդը պետք է ակտիվություն ու գործարարություն հանդես բերի, օգտագործի արտասահմանյան պարտնյորների հետ համագործակցելու հնարավորությունները՝ հանքային ջրերի ժամանակակից արտադրություն կազմակերպելու նպատակով: Դա մեզ հնարավորություն կտա դառնալ հանքային ջրերի խոշոր մատակարար՝ երկրին և արտասահմանին:

Պրոբլեմային հարցերից է սննդամթերքի կշռափաթեթավորումն ու արտաքին ձևավորումը: Չնայած հանրապետությունում բավարար պոլիգրաֆիական բազայի առկայությանը, շատ պարենային ապրանքներ շարունակում են թողարկվել անճաշակ ու անորակ փաթեթավորմամբ:

Մեծ են նաև հացամթերքների մինիստրության անելիքները (մինիստր՝ ընկ. Ռ. Ծահբազյան): Մարդկանց արդարացի դժգոհությունն են հարուցում հացի և հացաբուլկեղենի աղքատիկ տեսականին, մատակարարման հաճախակի խափանումները, և, որ գլխավորն է, որակը: Հացաթխման արդյունաբերության կարողությունների կեսից էլ պակաս բեռնվածության պայմաններում Երևանում ու հանրապետության մյուս քաղաքներում կոոպերատիվների ու անհատների թխած հացի աշխույժ առևտուր է գնում: Դա վկայում է, որ ճյուղի արտադրանքը դեռևս անմրցունակ է: Բարելավման կարիք է զգում նաև Հայկոոպի հաց թխող ձեռնարկությունների աշխատանքը:

Հանրապետության պետագրոարդը, պետպլանը, Հայկոոպը, ագրոարդյունաբերական համալիրի մյուս մինիստրությունները և գերատեսչությունները, կուսակցության քաղկոմները և շրջկոմները, քաղգործկոմները և շրջգործկոմները պետք է կարճ ժամկետում արմատական միջոցառումներ իրականացնեն ապահովելու գյուղատնտեսական հումքի խոր և կոմպլեքսային վերամշակումը, մթերքի պահպանումը: Պետք է առաջնահերթ ուշադրություն նվիրվի մանկական և դիետիկ սննդամթերքի, ինչպես նաև կիսաֆաբրիկատների արտադրության ծավալների շեշտակի մեծացմանը:

Հարկ է մտածել նաև այն մասին, որ հատկացված օտարերկրյա դրամական միջոցների մի մասը օգտագործվի տեխնոլոգիական սարքավորումների ձեռքբերման, վերամշակող ձեռնարկությունների ստեղծման նպատակով: Պետք է հնարավորին չափ կարճ ժամկետում լուծել գյուղատնտեսական հումքի և սննդամթերքի վերամշակման, փոխադրման ու պահպանման, ձեռնարկությունների ռացիոնալ տեղաբաշխման հարցերը, դրանք առավելագույնս մոտեցնելով արտադրության վայրերին:

Մենք դեռ որքա՞ն պետք է խոսենք ինվեստիցիոն քաղաքականության խոշոր սխալների, արտադրական շատ օբյեկտների չհիմնավորված կառուցման, գյուղատնտեսական արտադրանքի փոխադրման, պահպանման, վերամշակման և իրացման ժամանակ թույլ տրվող հսկայական կորուստների մասին: Վերջապես ե՞րբ են այդ խոսքերը գործի վերածվելու:

Մենք այստեղ քիչ հնարավորություններ չունենք: Դատեցեք ինքներդ: Ակնկալվող հավելումը միայն դաշտ-սպառող հարահոսի ռացիոնալ օգտագործումից կարող է կազմել մինչև 15, իսկ որոշ տեսակների գծով՝ մինչև 20 տոկոս: Ասենք նաև, որ կորուստների վերացման վրա կատարվող ծախսումներն էլ 2—3 անգամ ավելի պակաս կլինեն, քան նույն ծավալի լրացուցիչ արտադրանքի ստացման ծախսերը:

Հացահատիկի բերքահավաքի և վերամշակման ընթացքում մեր կորուստները հասնում են 35 հազար տոննայի, բանջարաբոստանային կուլտուրաներինը՝ ավելի քան 30, պտղինը՝ մինչև 8, խաղողինը՝ մինչև 11 հազար տոննա: Ընդհանուր առմամբ, արտադրության և վերամշակման բոլոր փուլերում ագրոարդյունաբերական համալիրին պատճառված վնասը ամենահամեստ հաշվումներով հասնում է բուսաբուծության մեջ մինչև 30 միլիոն, իսկ անասնապահության մեջ՝ մինչև 10 միլիոն ռուբլու:



Թույլ է պայքարը անտնտեսվարության, հափշտակումների, բացասական այլ երևույթների դեմ: Այստեղ մենք կրում ենք ոչ միայն տնտեսական, այլև բարոյական վնաս: Մարդիկ ամեն ինչ տեսնում են, ամեն ինչ գիտեն: Հարկավոր է ագրոարդյունաբերական համալիրում ստեղծել մեր օրենքները խախտողների նկատմամբ անհանդուրժողական մթնոլորտ, լայնորեն հրապարակել հափշտակումների յուրաքանչյուր փաստ: Այդ գործում անվճռականություն են հանդես բերում ժողովրդական վերահսկողության կոմիտեն (նախագահ՝ ընկ. Գ. Մարտիրոսյան), հանրապետության իրավապահ մարմինները (ՆԳ մինիստր՝ ընկ. Հ. Հարությունյան, դատախազ՝ ընկ. Վ. Նազարյան): Վաղուց արդեն ժամանակն է այս հարցերում հանդես բերել սկզբունքայնություն և հետևողականություն:

Ընկերներ: Ագրարային քաղաքականության գլխավոր հարցը եղել և մնում է հողի, նրա ռացիոնալ օգտագործման հարցը:

Առանձին ղեկավարների անտնտեսվարության, անպատասխանատվության հետևանքով տարեցտարի կրճատվել են վարելահողերը, գյուղատնտեսական շրջանառությունից հանվել ռոռգելի հողատարածություններ: Միայն վերջին 20 տարում շրջանառությունից դուրս է մնացել 16 հազար հեկտար արդեն յուրացված վարելահող: Շարքից դուրս է եկել ավելի քան 15 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն: Դրանց ստեղծման համար ներդրվել է մոտ 95 միլիոն ռուբլի: Միայն անցյալ տարի չօգտագործված է մնացել ավելի քան 4 հազար հեկտար վարելահող, որից 1380 հեկտարը՝ ոռոգելի:

Պետագրոարդի, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության, «Հայջրշին» հատուկ շինարարական միավորման, ժողովրդական դեպուտատների համապատասխան շրջանային խորհուրդների գործկոմների մեղքով տարիներ շարունակ չի լուծվում 27 հազար հեկտար աղուտների յուրացման և 33 հազար հեկտար գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակի բարելավման պրոբլեմը Արարատյան դաշտում: Չի լուծվում նաև Բաղրամյանի շրջանի պետական տնտեսությունների գյուղատնտեսական բարվոքման խնդիրը:

Ծայրաստիճան դանդաղ է բարձրանում ոռոգելի համակարգերի օգտակար գործողության գործակիցը: Միայն հանրապետության միջտնտեսային ջրանցքներում տարեկան կորչում է 600 միլիոն խորանարդ մետր ոռոգման ջուր, այսինքն՝ Սևանա լճից բաց թողնվող ջրի ծավալից գրեթե 2,5 անգամ ավելի:

Վերջին տարիներս նկատվում է ոռոգելի հողերի հատույցի նվազման միտում: Դրանց օգտագործման հարցը առանձնակի սրություն է ստանում ներկա դեֆիցիտային ջրատնտեսական պայմաններում: Սակայն գործը ջրի ու հողի մասին խոսակցություններից այն կողմ չի անցնում: Ընկ. ընկ. Յու. Ջավադյանը, Կ. Հովհաննիսյանը, Մ. Գևորգյանը, շրջգործկոմների այստեղ գտնվող նախագահները, ի վերջո, իրենց պատասխանատու պիտի զգա՞ն հանձնարարված տեղամասերի համար:

Պետագրոարդը, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը, «Հայջրշին» միավորումը, շրջգործկոմները պետք է արմատապես բարելավեն հողերի վիճակը և օգտագործումը, մելիորատիվ աշխատանքների տեմպերը և որակը, արագացնեն հողագործության գիտականորեն հիմնավորված համակարգերի արմատավորումը, անցումը ինտենսիվ տեխնոլոգիաների:

Ընկերներ: Ամենասկզբունքային ու ցավոտ հարցերից են պտուղբանջարեղենի, կարտոֆիլի արտադրությունը և բնակչությանը դրանց ռիթմիկ մատակարարումը: Ոմանք իրենց հանգստացնում են նրանով, որ բնակչության մեկ շնչի հաշվով այդ արտադրանքի թողարկմամբ հանրապետությունը երկրում գրավում է առաջին տեղերից մեկը: Իսկ մեր պտուղբանջարեղենի խանութների դատարկ վաճառասեղանները և կոլտնտեսային շուկաների բարձր գները տեսնելով, նույնը, ավաղ, չես պնդի: Ավելորդ է ասել, թե ինչպիսի հասարակական արձագանք ունի այդ պրոբլեմը, որքան բողոքներ ենք մենք ստանում պտուղբանջարեղենի հարահոսի ոչ ռիթմիկ աշխատանքի վերաբերյալ: Մեզ ոչ մի բարոյական իրավունք չի տրված, բավականաչափ հնարավորություններ ունենալով հանդերձ, բնակչությանը ամբողջ տարին լրիվ տեսականիով պտուղբանջարեղեն և կարտոֆիլ չմատակարարելու:

1987 թվականի դեկտեմբերին ԽՄԿԿ Կենտկոմը քննարկեց այդ ուղղությամբ հանրապետությունում կատարված աշխատանքը և լրջորեն քննադատեց այն: Արդեն բավականաչափ ժամանակ է անցել, սակայն աշխատանքում բեկում չի նկատվում:

Շատ խնդիրներ, մասնավորապես ցանքսերի կառուցվածքի վերանայումը, ինտենսիվ տեխնոլոգիաների, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության նոր ձևերի յուրացումը, բերքատվության, տնտեսությունների շահութաբերության բարձրացումը, պահպանման բազայի զարգացումը, դեռևս իրենց լուծմանն են սպասում:

Ճյուղում կան բավականաչափ չօգտագործված հնարավորություններ, չլուծված պրոբլեմներ: Տասներկուերորդ հնգամյակի երեք տարում հանրապետության բանջարեղեն աճեցնող տնտեսությունների մոտ կեսը չի կատարել գնումների պլանները: Նրանք պետությանը պակաս են տվել մոտ 40 հազար տոննա արտադրանք: Արարատյան դաշտի և մյուս շրջանների տնտեսությունների մեծ մասը չի պահպանում արտադրության սեզոնայնությունը, շարունակաբար չի կատարում տեսականու պլանը: Եվ ահա հետևանքը. հանրապետությունում բանջարեղենի 18 տեսակներից 11-ի պլանները չեն կատարվում:

Անհասկանալի է պետագրոարդի համապատասխան ստորաբաժանումների դիրքորոշումը նաև հանրապետության պտղաբուծության ու խաղողագործության զարգացման գործում: Տարեցտարի չարդարացված կերպով նվազում են այդ կուլտուրաների տարածությունները: Անթույլատրելիորեն դանդաղ են գցվում կորիզավոր պտուղների այգիներ, կորչում են հանրապետության համար ավանդական շատ խաղողատեսակներ, փաստորեն չեն մշակվում հատապտղային կուլտուրաներ: Ճյուղի վարման ցածր մակարդակի հետևանքով նախատեսվածից պակաս բերք է ստացվում:

Այս ամենը, ընկերներ, հանգեցնում է նրան, որ մեզանում տարեցտարի չի թուլանում պտուղբանջարեղենի մատակարարման լարվածությունը, դանդաղ են վերացվում ճյուղի թերությունները:

Այս մասին նույնպես սրությամբ asvեց ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում: Ժամանակն անցնում է, իսկ արդյունքները չեն երևում:

Հարկ է, որ քաղաքային իշխանությունները ևս հիմնավորապես զբաղվեն պտուղբանջարեղենի համալիրի պրոբլեմներով: Նրանք լիովին ի զորու են լուծելու պահեստարանների կարողությունների մեծացման և առևտրի նյութատեխնիկական բազայի զարգացման հրատապ հարցերը: Ժողովրդական դեպուտատների յուրաքանչյուր քաղաքային խորհուրդ պետք է մշակի և իրացնի «քաղաքը՝ պտուղբանջարեղենի համալիրին» ծրագիր:

Այս տարի պտուղբանջարեղենի մատակարարման հետ կապված իրադրությունը օրեցօր բարդանում է. սկսվել է էվակուացված բնակչության զանգվածային վերադարձը, աճում է վերականգնման գործում ներգրավված կազմակերպությունների աշխատողների թիվը: Դրան ավելացրեք ավելի քան 200 հազար վերաբնակներին, որոնց հիմնական մասը տեղավորված է քաղաքներում ու շրջկենտրոններում: Կարծում եմ, այս դժվար կացության պարագայում, քանի դեռ հանրապետության բնակչությունը ապահովված չէ պտուղբանջարեղենով, նպատակահարմար է թեկուզև ժամանակավոր արգելել դրա արտահանումը Հայաստանից: Թերևս նման ձեռնարկումը խիստ է, սակայն հարկադրական է ու անհրաժեշտ:

Պտուղբանջարեղենի ռեսուրսների ավելացման նպատակով նվազագույնի են հասցվել ընդհանուր միութենական ֆոնդին դրա մասհանման առաջադրանքները, 20 տոկոսով նվազեցվել է պտուղբանջարեղենի պահածոյի արտադրությանը հատկացվող հումքի քանակությունը: Պայմանագրային գներով տնտեսությունների արտադրանքի իրացումը կկատարվի միայն Հայկոոպի կազմակերպությունների միջոցով: Եվ, վերջապես, տնտեսություններին արգելված է մթերք բաց թողնել առևտրական և վաճառահանման կոոպերատիվներին:

Ընկերներ: Հանրապետությունում լուրջ իրադրություն է ստեղծվում բնակչությանը անասնապահական մթերքներով ապահովելու գործում:

Մսի և մսամթերքների սպառումը մեզանում մեկ շնչի հաշվով կազմում է 48 կիլոգրամ, որը միութենական միջին ցուցանիշից պակաս է 15, իսկ ֆիզիոլոգիական նորմայից՝ 19 կիլոգրամով: Սահմանվածից կրկնակի ցածր են անարատ կաթնամթերքի սպառման նորմաները:

Հանրապետությունը տարեկան ներմուծում է կաթի վերածած մոտ 900 հազար տոննա կաթնամթերք, ինչպես նաև ավելի քան 60 հազար տոննա միս: Սեփական



կաթնամթերքով մեզ ապահովում ենք ընդամենը 26, իսկ մսամթերքով՝ 59 տոկոսով: Նոր տնտեսավարման պայմաններում մենք պետք է, ավելին՝ պարտավոր ենք մեր պահանջմունքները առավելագույնս բավարարել սեփական արտադրության հաշվին, չապավինելով լոկ դրսից ստացվածին:

Այստեղ մենք քիչ հնարավորություններ չունենք: Բայց դրանք օգտագործվում են ծայրաստիճան անբավարար և, ես կասեի, անպատասխանատու: Իսկ պետագրոարդի նախագահի տեղակալ ընկ. Կ. Եգանյանը կոնկրետ գործերի փոխարեն խոստումներ է շռայլում կամ տարբեր արդարացնող պատրվակներ փնտրում:

Տնտեսությունների գրեթե 40 տոկոսը մեկ կովից ստանում է 2 հազար կիլոգրամից էլ պակաս կաթ և ընդամենը 16 տնտեսություն՝ 4 հազար կիլոգրամից ավելի: Վերջին երեք տարում խոշոր եղջերավոր անասունների մեկ գլխի հաշվով միջինը արտադրվել է ընդամենը 81 կիլոգրամ միս, մեկ խոզի հաշվով՝ 78 և մեկ ոչխարի հաշվով՝ 14 կիլոգրամ: Բայց չէ որ սա անթույլատրելիորեն ցածր ցուցանիշ է: Տնտեսությունների փաստորեն մեկ քառորդը ամեն տարի չի կատարում պետությանը մսի ու կաթի հանձնման պլանը: Ընթացիկ հնգամյակի 3 տարում պետությանը պակաս է տրվել 33 հազար տոննա միս և 45 հազար տոննա կաթ:

Կրկնում եմ, մենք ապրում ենք հավելատրումով, և մեր հնարավորությունների նման օգտագործումը աններելի է: Անասնապահական համալիրի ղեկավար աշխատողները պետք է ամենալուրջ հետևություններ անեն: Զեկույցներով ու խոստումներով ժողովրդին չես կերակրի:

Հանրապետությունում բարձիթողի վիճակում է տոհմաբուծական գործը: Վատ է օգտագործվում գենետիկ պոտենցիալը: Տոհմային մատղաշի պահանջմունքի ընդամենը 10 տոկոսն է բավարարվում սեփական արտադրության հաշվին: Վերջին 10 տարում հանրապետություն է ներմուծվել մոտ 90 հազար գլուխ տոհմային անասուն կամ եղած կաթնատու գլխաքանակի կեսը: Փաստորեն ստացվում է, որ թանկարժեք տոհմային անասունը մեզ մոտ օգտագործվել է որպես մսացու: Ինչպե՞ս կարելի է այս ամենից հետո էական տեղաշարժեր սպասել անասնապահության մթերատվության ասպարեզում:

Անասնապահության հետագա զարգացումը դանդաղում է նաև կերարտադրության մեջ առկա լուրջ թերությունների պատճառով: Կերարտադրության ինտենսիվացման և սպիտակուցի արտադրության ավելացման նպատակով մշակված ծրագրերը, ինչպես երևում է, արխիվ են հանձնվել:

Մեզ լրջորեն անհանգստացնում է Հայթռչնարդի (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Գ. Ավդալյան) ձեռնարկությունների մսի ու ձվի արտադրության կարողությունների անարդյունավետ օգտագործումը: Թռչնի մսի արտադրության կարողությունները օգտագործվում են 70—75 տոկոսով: Թերացման գլխավոր պատճառները տեխնոլոգիական թույլ կարգապահությունն է, արտադրվող համակցված կերերի ցածր որակը, արտադրանքի մեծ կորուստները, սոցիալիստական սեփականության պահպանման վատ վիճակը: Մենք ռեալ հնարավորություն ունենք արդեն մինչև ընթացիկ հնգամյակի վերջը կրկնապատկելու, իսկ մինչև 1995 թվականը ընդհուպ եռապատկելու թռչնի մսի արտադրությունը:

Անհրաժեշտ է արագացնել ձկնատնտեսության զարգացումը: 1995 թվականին ձկան արտադրությունը պետք է հասցվի 11 հազար տոննայի, իսկ 2000 թվականին՝ 15 հազար տոննայի, որը կրկնակի կգերազանցի ներկա մակարդակը:

Մեզ մոտ լրիվ բացակայում է խոհարարական ձկնեղենի, կիսաֆաբրիկատների, մանրատ ձկնապրանքի, պահածոների արտադրությունը: Չկա մասնագիտացված խանութների, սրճարանների ցանց, որի հետևանքով ձկան ընդհանուր պակասի պայմաններում նույնիսկ ծագում են դրա իրացման հետ կապված դժվարություններ: Այն տպավորությունն է ստեղծվում, թե «Հայձուկ» միավորումում իշխում են ինքնահանգստացումն ու բարեհոգությունը: Հանդես չի բերվում անհրաժեշտ նախաձեռնություն հանրապետության ձկնարդյունաբերության հետագա զարգացման ուղղությամբ: «Հայձուկ» արտադրական միավորումը (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Հ. Կարապետյան) պետք է լրջորեն մոտենա ծառացած հարցերին, լիովին օգտագործի ձկնաբուծության զարգացման հնարավորությունները:

Մենք պարտավոր ենք մինչև 1995 թվականը հանրապետությունում մեկ շնչին ընկնող մսի ու մսամթերքի սպառումը հասցնել մինչև 65 կիլոգրամի, կաթինը և կաթնամթերքինը՝ 420, կարտոֆիլինը՝ 66, բանջարեղենինը և բոստանային կուլտուրանե-

մատության համար ասեմ, որ ներկայումս այն կազմում է 13 քառակուսի մետր: Մինչև 1995 թվականի վերջը գյուղական բնակավայրերը և շրջկենտրոնները ապահովել բնական գազով, խմելու ջրով, կոյուղու համակարգով, բավարարել գյուղի բնակչության հեռախոսի պահանջմունքները:

Հանրապետության ագրարային հատվածի առջև կանգնած նոր խնդիրների կենսագործման համար անհրաժեշտ է կադրային կորպուսի նոր մտածողություն: Տարիներ շարունակ դրսևորված պահպանողականությունը հանգեցրել է ոչ միայն տընտեսական ու սոցիալական լճացման, այլև ղեկավար շատ աշխատողների մեջ, ասենք և ոչ միայն նրանց, մեթոդաբար բթացրել ստեղծագործական նախաձեռնության զգացումը:

Գոյություն ունեցող կադրային «վակուումը» այսօր, ինչպես երբեք, լրջորեն արգելակում է մեր առաջընթացը: Ելքը մեկն է՝ վճռականորեն վարել կադրային նոր քաղաքականությունը, որը կոչված է ապահովել կառավարման բոլոր օղակների բարձր մարտունակություն:

Կառավարման տնտեսագիտական մեթոդների, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևերի արմատավորման անթույլատրելիորեն դանդաղ տեմպերը, ինտենսիվ տեխնոլոգիաների յուրացման նկատմամբ արհամարհական վերաբերմունքը հետևանք են գյուղատնտեսության շատ ղեկավարների ու մասնագետների տնտեսագիտական անիրազեկության: Ագրոարդյունաբերական համալիրում չեն բավականացնում որակյալ տնտեսագետները, հաշվապահները: Լեռնային շրջանների մի շարք տնտեսություններում տարիներ շարունակ կարիք է զգացվում անասնաբույժների, ինժեներ-մեխանիկների և այլ մասնագետների: Միևնույն ժամանակ ըստ իրենց մասնագիտության անբավարար են օգտագործվում հայկական գյուղատնտեսական և Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտների շրջանավարտները:

Ստեղծված վիճակը հետևանք է այն բանի, որ հանրապետության պետագրոարդը (նախագահի տեղակալ՝ ընկ. Մ. Բալոյան), շատ կուսշրջկոմներ, ագրոարդյունաբերական համալիրի կուսակցական կազմակերպություններ, ժողովրդական դեպուտատների շրջանային խորհուրդների գործկոմներ մակերեսային և լիբերալ մոտեցում են ցուցաբերում կադրերի ընտրության ու տեղաբաշխման նկատմամբ, հաճախ գործում են առանց կադրերի հեռանկարը և հաջորդայնությունը տեսնելու:

Ընկերնե՛ր:

Մի քանի խոսք գյուղատնտեսության ընթացիկ գործերի մասին, որոնք խիստ մտահոգություն են պատճառում մեզ: Երկրաշարժը, գարնան ցրտերն ու կարկտահարությունը, տևական երաշտը, միգրացիոն պրոցեսները ծայրաստիճան լարված իրադրություն ստեղծեցին: Կորիզավոր պտղի բերքի սպասվող կորուստները կազմում են 60, խաղողինը՝ մինչև 45 տոկոս: Բարդություններ են առաջանալու նաև անասնապահության մեջ կերի սպասվող թերհավաքման պատճառով:

Չնայած անասնապահական մթերքների վաճառքի կիսամյակի պլանը կատարվել է, սակայն անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ պակաս է վաճառվել 2,8 հազար տոննա անասուն և թռչուն, 26,3 հազար տոննա կաթ, 26,3 միլիոն հատ ձու: Մսամթերման գործում թերացել են 17 շրջաններ, կաթի մթերման գործում՝ 27: Վատացել է իրադրությունը նաև բուսաբուծության մեջ:

Ստեղծված իրավիճակում յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն պետք է արտակարգ միջոցներ ձեռնարկի աճեցված բերքը անկորուստ հավաքելու և մսուրային շրջանին նախապատրաստվելու համար: Հարկավոր է օպերատիվորեն լուծել հանրապետություն կոշտ կերեր ներմուծելու հարցերը, ամեն ինչ անել, որպեսզի յուրաքանչյուր տնտեսություն լիովին պատրաստ լինի առաջիկա ձմռանը:

Այսօր հանրապետության ջրամբարներում կուտակվել է 70 տոկոսով պակաս ջուր, քան անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցում: Տագնապալի վիճակ է ստեղծվում Թալինի, Աշտարակի, Եղեգնաձորի և ուրիշ շատ շրջանների տնտեսություններում: Թվում էր, թե ստեղծված իրավիճակում պետք է ռացիոնալ, խնայողաբար օգտագործվեին առկա ռեսուրսները, բայց, ցավոք, դարձյալ թույլ են տրվում չհիմնավորված կորուստներ: Հայկական ԽՍՀ մելիորացիայի և ջրային տընտեսության մինիստրությունը, պետագրոարդը, տեղական խորհուրդների գործկոմները պետք է ապահովեն ոռոգման ջրի յուրաքանչյուր խորանարդ մետրի ռացիոնալ օգտագործումը: Սա չափազանց կարևոր հարց է:



Իրավիճակը կուսակցական կոմիտեներից պահանջում է ակտիվ քաղաքականմասսայական աշխատանք կատարել աշխատավորական կոլեկտիվներում: Հարկավոր է կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի ծանրության կենտրոնը փոխադրել անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներ, դաշտեր ու ֆերմաներ: Առանձնակի ուշադրություն նվիրել կադրերի պատասխանատվության բարձրացմանը, աշխատանքային ու կատարողական կարգապահության ամրապնդմանը:

Մենք հաջողության չենք հասնի, եթե սկզբունքային դիրքերից չգնահատենք գյուղի հետ կապված շատ հարցեր, եթե տարբերակված, ոչ ստանդարտ մոտեցում չցուցաբերենք կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքին:

Ինչպես գիտեք, օրերս ԽՄԿԿ Կենտկոմում կայացավ խորհրդակցություն, որտեղ քննարկվեցին կուսակցական աշխատանքի որոշ հարցեր վերակառուցման պայմաններում: Մեզ անհրաժեշտ է առաջին պլան մղել կուսակցական աշխատանքի վերակառուցումը, գյուղի աշխատավորի հոգսերի նորովի ընկալումը, վարչարարությունից հրաժարվելը, գյուղի տնտեսական ու հոգևոր կյանքի դեմոկրատացման հարցերը, այս ամենի վրա կենտրոնացնել ինչպես կուսակցական, այնպես էլ խորհրդային մարմինների բոլոր ջանքերը:

Կուզենայի նշել, որ չնայած վերջին մեկուկես տարում գյուղատնտեսության մեջ ստեղծված բարդ իրադրությանը, մի շարք շրջկոմների հաջողվել է խորհրդային, տնտեսական մարմինների հետ համատեղ գտնել ոչ ստանդարտ լուծումներ, ապահովել ագրարային հատվածի ռիթմիկ աշխատանքը:

Այսպես, բնակչության զանգվածային միգրացիան նկատելիորեն փոխեց ժողովրդագրական իրավիճակը և բարդ իրադրություն ստեղծեց Մասիսի շրջանի ագրարային հատվածում. մեկնած գյուղական բնակիչներին փոխարինեցին հիմնականում նախկին քաղաքաբնակներ, որոնք մինչ այդ աշխատել էին արդյունաբերության, շինարարության մեջ, սպասարկման ոլորտում: Հարկավոր էր նրանց հաղորդակից դարձնել գյուղատնտեսական աշխատանքին, կազմակերպել համապատասխան ուսուցում: Ձեռնարկված միջոցները հնարավորություն ընձեռեցին զգալի չափով թուլացնելու ծագած պրոբլեմների սրությունը և ընդհանուր առմամբ հաջողությամբ վարելու գյուղատնտեսական աշխատանքները:

Ստեղծված ոչ դյուրին պայմաններում գյուղի պահպանմանը, նրա սոցիալական ու տնտեսական հարցերի լուծմանը, աշխատանքի նոր մեթոդների արմատավորմանը նպատակամղված աշխատանքի լավ օրինակ են տալիս Ղուկասյանի, Վարդենիսի, Իջևանի, Արարատի և այլ կուսշրջկոմներ:

Օրերս ՀԿԿ Մեղրու շրջանային կոմիտեի պլենումը, քննարկելով ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումի որոշումների կատարման ուղղությամբ շրջանի կուսակցական կազմակերպությունների խնդիրները, ելնելով շրջանի պայմանների առանձնահատկություններից, տնտեսությունների ֆինանսական ծանր վիճակից, շրջանի գյուղատնտեսության զարգացման միակ ճիշտ ուղին համարեց վնասով աշխատող և աշխատուժով չապահովված տնտեսությունները կամավոր սկզբունքով վարձակալական կոլեկտիվների, ընտանեկան-անհատական, գյուղացիական տնտեսությունների, կոոպերատիվների վերակազմելը: Հարկավոր է անհրաժեշտ օգնություն ցույց տալ շրջկոմին՝ ընդունած որոշումները իրականացնելու համար:

Այսօր գյուղում անհնար է ղեկավարել վարչական մեթոդներով, գործել ուժի դիրքից, արհեստականորեն արմատավորել վերակառուցումը: Այնինչ շատ կուսշըրջկոմներ, վատ պատկերացնելով իրադրությունը, պարզապես սպասողական դիրք են բռնել, ինքնահոսի են մատնել քաղաքական աշխատանքը:

Ասվածը վերաբերում է, օրինակ, ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմին: Ղեկավարության անհետևողական, պասսիվ դիրքորոշումը հանգեցրել էր կուսակցական, խորհրդային մարմիններից բնակչության օտարացմանը, վերջերս տեղի ունեցած հայտնի իրադարձություններին: Մենք հարկադրված էինք ընկ. Ս. Պետրոսյանին ազատել կուսակցության շրջանային կոմիտեի առաջին քարտուղարի պաշտոնից:

Անհրաժեշտ է նշել, որ հանրապետության մի շարք շրջկոմներում ու քաղկոմներում ևս զգալիորեն թուլացել է կազմակերպական-կուսակցական, գաղափարական աշխատանքը: Նրանք դեռ չեն կարողանում նոր պայմաններում գտնել աշխատանքի նոր ձևեր, անհրաժեշտ ճկունություն ու գործիմացություն չեն ցուցաբերում մարդկանց հետ տարվող աշխատանքում, չեն կարողանում լիարժեք օգտագործել կոմունիստ-

ների ուժերը վերակառուցման խորացման, սոցիալ-տնտեսական զարգացման, տարիներով կուտակված բազմաթիվ խնդիրների լուծման գործում:

Ինչի՞ մասին է խոսում այս ամենը: Նախ և առաջ, որ Կենտկոմի ապարատը, բաժինները վատ գիտեն իրադրությունը տեղերում: Լուրջ քննադատության է արժանի կազմակերպական-կուսակցական և կադրային աշխատանքի բաժինը (բաժնի վարիչ՝ ընկ. Ռ. Հակոբյան): Բաժինը պետք է ավելի շատ խորամուխ լինի և վերլուծի շրջանային կուսկազմակերպություններում տիրող իրավիճակը, կատարելագործի կադրերի հետ տարվող աշխատանքի ձևերը և մեթոդները, բարձրացնի նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ:

Մենք պետք է ճանաչենք մարդկանց, կանխատեսենք իրադարձությունները, բանը չհասցնենք ճգնաժամային իրավիճակների, ինչպես դա տեղի ունեցավ մի շարք շրջաններում, ժամանակին իրականացնենք կազմակերպական քաղաքական ձեռնարկումներ:

Գյուղում տարվող կուսակցական աշխատանքի մեկ այլ կարևոր տեղամասը, մեր կարծիքով, ամենակարևորը, ամենագլխավորը՝ գյուղական սկզբնական կուսակցական կազմակերպությունների հետ տարվող աշխատանքն է: Հարկավոր է բարձրացնել սկզբնական կուսկազմակերպությունների ավանգարդային դերը, յուրաքանչյուր կոմունիստի հետ աշխատել անհատապես: Գյուղական և ոչ մի կոմունիստ, ագրոարդյունաբերական համալիրի և ոչ մի աշխատող իրավունք չունի անմասն մնալու կուսակցության արդի ագրարային քաղաքականության իրականացման, բնակչության պարենային ապահովման արմատական բարելավման գործից:

Հանրապետությունում ստեղծված բարդ ու ծանր իրավիճակի կապակցությամբ կուզենայի դիմել հանրապետության երիտասարդությանը, կոմերիտականներին: Այսօր առավել, քան երբեք, անհրաժեշտ է երիտասարդությանը նպատակամղել մեր ժողովրդի համար անհրաժեշտ, սկզբունքորեն կարևոր գործերի: Գյուղատնտեսական աշխատանքի նորացման ծրագիրը, բնակչության պարենավորման արմատական բարելավումը, կարծում եմ, աներևակայելի են առանց ջլապինդ երիտասարդ ձեռքերի: Այսօր պետք է երիտասարդությանն ամրացնել գյուղում, նրան կապել հողին, այնպես անել, որ նա խորապես գիտակցի ժողովրդի հանդեպ ունեցած իր պատասխանատվությունը պարենային պրոբլեմի լուծման գործում: Սա եմ ես համարում գլխավոր խնդիրը:

Լուրջ և պատասխանատու խնդիրներ է կոչված լուծելու ՀԿԿ Կենտկոմի ագրարային քաղաքականության հարցերի հանձնաժողովը, որը պետք է իր ուշադրությունը կենտրոնացնի այդ կարևորագույն սոցիալական ոլորտի զարգացման առաջնային ուղղությունների վրա, խորամուխ լինի գյուղի հասարակական կյանքի բոլոր պրոցեսներին, մշակի և առաջադրի ագրոարդյունաբերական համալիրին վերաբերող գիտականորեն հիմնավորված առաջարկություններ:

Կուտակված պրոբլեմների ու նոր պահանջների լույսով իր աշխատանքը արմատապես պետք է փոխի նաև Կենտկոմի ագրարային բաժինը (բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Գրիգորյան): Բաժնին պակասում են համառությունն ու հետևողականությունը ընդունած որոշումների իրականացումն ապահովելու գործում: Բաժինը պետք է իրոք դառնա գաղափարների գեներատոր, ընդհանրացնի ու տարածի գյուղական կուսկազմակերպությունների աշխատանքի լավագույն փորձը: Բաժնի աշխատողները դեռևս թույլ են կապված գյուղատնտեսական արտադրության պրակտիկայի, գիտական հիմնարկների հետ, քիչ են նախաձեռնություն հանդես բերում գյուղի հարցերը մշակելու և Կենտկոմին առաջադրելու գործում:

Կուսակցական աշխատանքի կարևոր բաղկացուցիչն է նաև այս կամ այն շրջանում, տնտեսությունում կուտակված առաջավոր փորձի բացահայտումն ու ներդրումը: Մինչդեռ այդ աշխատանքը վարվում է տարերայնորեն և չի տալիս շոշափելի արդյունքներ: Դրանում իրենց մեղքի ոչ քիչ բաժինն ունեն կուսակցական, խորհրդային, արհմիութենական մարմինները, ինչպես նաև մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը: Ի դեպ, մասսայական ինֆորմացիայի միջոցները խոշոր պարտք ունեն գյուղի աշխատավորների հանդեպ: Նրանց գործերը, հոգսերը, գյուղի սոցիալական ոլորտի զարգացման պրոբլեմները պետք է մշտապես գտնվեն մեր մամուլի ուշադրության կենտրոնում:



Այսօր մենք թևակոխում ենք մի նոր, առավել պատասխանատու փուլ՝ կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման պրակտիկ գործողությունների փուլը: Կուսակցական բոլոր կադրերը այսօր քննություն են հանձնում վերակառուցմանը: Մեզ վրա առանձնակի քաղաքական պատասխանատվություն է ընկած:

Կուսակցական աշխատանքը նոր պայմաններում պահանջում է համարձակություն, ինքնուրույնություն, ճկունություն, վճռականություն:

Հարկավոր է ձեռք բերել բանիմացություն, գիտելիքներ, իրազեկ լինել այնպես, որ կուսաշխատողը ասելիք ունենա մարդկանց, որ նա տեսական հիմք ունենա բանավիճելու, ունենա փաստարկների բավականաչափ պաշար, որպեսզի մարդիկ անսան նրա կարծիքին:

Մենք բոլորս պետք է ավելի շատ գործարարություն դրսևորենք: Ուժեղացնենք կուսակցական որոշումների իրականացման վերահսկողությունը: Ավելի մեծ ուշադրությամբ ուսումնասիրենք աշխատավորների կարիքները, պահանջմունքները, կարծիքները:

Հանրապետության աշխատավորները գիտեն, որ մենք ունենք պրոբլեմներ, որոնց լուծման համար կպահանջվեն վիթխարի միջոցներ և որոշակի ժամանակ: Սակայն նրանք չեն հաշտվի, եթե տեղաշարժեր չլինեն այն հարցերում, որոնք կարելի է լուծել արդեն առկա հնարավորություններով: Մենք պետք է հստակ ըմբռնենք՝ մեզ քիչ ժամանակ է տրված, որպեսզի դուրս գանք ստեղծված լուրջ, ես կասեի՝ օրհասական իրադրությունից: Սա է իրողությունը: Սա էլ պետք է լինի ելակետը մեր աշխատանքում:

Մեզ, ընկերներ, մեծ ու լարված աշխատանք է սպասում, որը հիրավի համաժողովրդական ջանքեր է պահանջելու: Այն պետք է գլխավորեն հանրապետության կուսակցական կազմակերպությունները, կոմունիստները:

---

## *Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1989 թվականի հուլիսի 25-ի պլենումի*

# ՈՐՈՇՈՒՄԸ

## Հանրապետության կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների խնդիրները արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման և բնակչության պարենավորման արմատական բարելավման ուղղությամբ

Լսելով և քննարկելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Գ. Հարությունյանի «Հանրապետության կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների խնդիրները արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման և բնակչության պարենավորման արմատական բարելավման ուղղությամբ» զեկուցումը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը նշում է, որ նախորդ տարիներին հանրապետությունում իրականացված ագրարային քաղաքականությունը պատշաճ արդյունք չի տվել, այն ձևավորվել և իրացվել է առանց գյուղում արտադրատնտեսական հարաբերությունների կատարելագործման անհրաժեշտությունը հաշվի առնելու: Ագրարային քաղաքականությունը փոխելու, ղեկավարման վարչահրամայական համակարգից հրաժարվելու, գյուղի աշխատավորների տնտեսական շահագրգռությունը բարձրացնելու նպատակով ձեռնարկվող փորձերը թերի էին ու անհետևողական:

Չնայած ագրոարդյունաբերական համալիրում միջոցների հարաճուն ներդրմանը, նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը, գյուղատնտեսության զարգացման մեջ բեկում, հանրապետության բնակչության պարենավորման անհրաժեշտ բարելավում տեղի չունեցավ: Վերջին 20 տարում կոլտնտեսությունների, միջտնտեսային կազմակերպությունների և խորհտնտեսությունների հիմնական գյուղատնտեսական արտադրական ֆոնդերը մեծացել են 5,1 անգամ, պարարտանյութերի մատակարարումը՝ 3,3 անգամ, աշխատանքի վարձատրությունը՝ 2,5 անգամ: Միևնույն ժամանակ արտադրանքի համախառն արտադրությունն ավելացել է 76 տոկոսով, իսկ ֆոնդահատույցը նվազել է գրեթե 3 անգամ:

Ծյուղերի էքստենսիվ վարումը հանգեցրել է ֆինանսական լարվածության մեծացմանը: Վնասով աշխատող և ցածր շահութաբեր կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների թիվն աճում է:

Պետագրոարդը, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը, «Հայջրշին» մասնագիտացված միավորումը, տեղական կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինները անբավարար են լուծում հողային ու ջրային ռեսուրսների օգտագործման ասպարեզում կուտակված պրոբլեմները, ցածր են մելիորատիվ աշխատանքների, հողագործության գիտականորեն հիմնավորված համակարգերի արմատավորման տեմպերն ու որակը:

Անարդյունավետ են օգտագործվում պտուղբանջարեղենի տնտեսության հնարավորությունները, պատշաճ բեկում չկա բնակչությանը պտղի, բանջարեղենի և կարտոֆիլի մատակարարումը բարելավելու գործում: Չի ապահովվում տեսականու պլանի կատարումը:

Լուրջ թերություններ կան հանրապետության անասնապահության մեջ, բարձիթողի վիճակում է տոհմաբուծական գործը, վատ է օգտագործվում գենետիկ պոտենցիալը: Ընդհանուր սպառման մսեղենի ընդամենը 59 տոկոսը և կաթնեղենի 26 տոկոսն է արտադրվում հանրապետությունում:

Պարենային պրոբլեմի լուծման գործում դարձյալ բավարար չեն օգտագործվում բնակչության անձնական տնտեսությունների, ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների և կոլեկտիվ այգեգործության հնարավորությունները:

Դանդաղ է բարելավվում իրադրությունը հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի վերամշակման ճյուղերում: Ծայրահեղ դանդաղ է ապահովվում անցումը առաջավոր տեխնոլոգիաների, թույլ են օգտագործվում կենսատեխնոլոգիայի, սելեկցիայի և ագրոքիմիայի հնարավորությունները:

Պետագրոարդն ինչպես հարկն է չի կոորդինացնում և ուղղություն տալիս գիտական ստորաբաժանումների գործունեությանը: Ծայրաստիճան դանդաղ է ապահովվում անցումը առաջավոր տեխնոլոգիաների, թույլ են օգտագործվում կենսատեխնոլոգիայի, սելեկցիայի և ագրոքիմիայի հնարավորությունները:

Հայսպառկոոպը բավարար չի կատարում բնակչությունից գյուղատնտեսական մթերքի ավելցուկների գնումը կազմակերպելու, վերամշակման արտադրությունների ցանցն ընդլայնելու գործառնությունները:

Գյուղի բնակիչների արդարացի վրդովմունքն են առաջ բերում գյուղի սոցիալական ոլորտի բարձիթողի վիճակը, աշխատանքի ու կենցաղի պայմանները: Գյուղերի գրեթե երկու երրորդը ջրմուղ չունի և գազիֆիկացված չէ: Նախադպրոցական հիմնարկներ, հիվանդանոցներ, ճաշարաններ չկան յուրաքանչյուր երկրորդ գյուղում: Ոչ բոլոր գյուղերում կան հանրակրթական դպրոցներ, գրադարաններ, ակումբներ: Թույլ է առողջապահության և սպորտի նյութական բազան, սրված է էկոլոգիական իրավիճակը:

Անբավարար են վերականգնման աշխատանքների տեմպերը երկրաշարժի գոտու գյուղական վայրերում, տագնապալի վիճակ է ստեղծվել բնակարանների և արտադրական մասնաշենքերի շինարարության ասպարեզում:

Հանրապետության ագրարային հատվածում ստեղծված իրադրությունը պահանջում է արմատապես վերափոխել պետագրոարդի և տեղերում նրա մարմինների գոյություն ունեցող կառուցվածքը:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները չեն կարողացել իրենց աշխատանքը վերակառուցել ժամանակի պահանջների ոգով, խորությամբ չեն գիտակցել գյուղի աշխատավորի նկատմամբ ամենօրյա հոգատարության, նրա կենսական պրոբլեմների լուծման անհրաժեշտությունը: Նրանց կազմակերպչական և քաղաքական աշխատանքի ոճը, ձևերն ու մեթոդները չեն համապատասխանում մեր հասարակության դեմոկրատացման, ճյուղի վերակառուցման խնդիրներին: Թույլ է ագրոարդյունաբերական համալիրի կադրերի հետ տարվող աշխատանքի դրվածքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը գտնում է, որ ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի մարտյան պլենումի մշակած կուսակցության սկզբունքորեն նոր ագրարային քաղաքականությունը, ագրարային հատվածում արմատական փոփոխությունները, վճռական շրջադարձը դեպի տնտեսավարման նոր մեթոդներ հնարավորություն կտան վերականգնել գյուղացու շահագրգռությունը գյուղատնտեսական մթերքի արտադրության նկատմամբ, նրան վերադարձնել հողի տիրոջ դիրքը, լուծել բացառիկ սուր պրոբլեմ՝ բնակչության պարենամթերքի պահանջմունքի բավարարման պրոբլեմը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը **որոշում է**.

1. Հավանություն տալ տվյալ հարցի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Գ. Հարությունյանի զեկուցման պարունակած դրույթներին ու հետևություններին:

Պարտավորեցնել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին, կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին՝ հաստատակամորեն և հետևողականորեն իրականացնել ագրարային հարաբերությունների բնագավառում ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի մարտյան պլենումի մշակած քաղաքական կուրսը, արմատապես փոխել կուսակցական մարմինների աշխատանքի ոճը: Ըստ ամենայնի զարգացնել ագրոարդյունաբերական համալիրի, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի, գյուղական բոլոր բնակիչների նախաձեռնությունը պարենային ապրանքի ավելացման, բնակչությանը սննդամթերքի մատակարարման գործի բարելավման ուղղությամբ: Գյուղի զարգաց-

ման մեջ ապահովել արմատական տնտեսական, սոցիալական, կուլտուրական փոփոխություններ, ասպարեզ բացել գյուղի աշխատավորների աշխատանքային ու սոցիալական ակտիվության համար, գյուղացուն վերադարձնել հողի տիրոջ դիրքը, հասնել մթերքի արտադրության ավելացման և որակի բարձրացման գործում նրա շահագրգռվածության մեծացմանը:

Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին՝ մշակել գյուղացիական տնտեսության մասին օրենքի նախագիծ, որտեղ նախատեսել նրանց գործունեության տնտեսական, կազմակերպական ու սոցիալական պայմանները, ինչպես նաև իրավական հիմքը: Նախատեսել անժամկետ օգտագործման պայմանով, ժառանգաբար փոխանցելու իրավունքով և անվճար հողը գյուղացուն տալու սկզբունքները: Համաժողովրդական քննարկման համար օրենքի նախագիծը մտցնել Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդ:

2. Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին, հանրապետության պետպլանին, պետագրոարդին, ֆինանսների մինիստրությանը, ագրոարդբանկին, Հայկոոպին, ժողովրդական դեպուտատների խորհուրդների գործկոմներին՝ գյուղատնտեսական արտադրության, դաշտերի ու ֆերմաների մթերատվության աճի տեմպերի վրա տնտեսավարման նոր մեթոդների ազդեցությունը մեծացնելու նպատակով միջոցառումներ իրականացնել գյուղում տնտեսական հարաբերությունների արմատական փոփոխման համար: Կոլտնտեսությունները, խորհտնտեսություններն ու ագրոարդյունաբերական համալիրի մյուս ձեռնարկությունները փոխադրել տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքի, լայնորեն կիրառել վարձակալական հարաբերությունները, օգտագործել սոցիալիստական սեփականության բազմապիսի ձևերն ու տնտեսավարման տեսակները: Առաջիկա երկու տարում հասնել դրանց անվնասաբեր աշխատանքի: Անհրաժեշտ է վերացնել բոլոր խոչընդոտները վարձակալության արմատավորման և աշխատանքի կազմակերպման մյուս առաջադիմական ձևերի ճանապարհից, ակտիվորեն աջակցել անձնական օժանդակ տնտեսությունների զարգացմանը: Հաշվի առնելով հանրապետության յուրաքանչյուր ռեգիոնի բնատնտեսական պայմանները, առաջարկություններ նախապատրաստել անասնապահական մթերքի տարածքային տարբերակված գնման գներ սահմանելու համար:

3. Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը մեծ նշանակություն է տալիս ագրոարդյունաբերական համալիրի կառավարումն արմատապես վերակառուցելուն, ղեկավարման վարչահրամայական մեթոդները լիովին արմատախիլ անելուն, ռեգիոնի, տնտեսության կոնկրետ պայմաններում ագրարային նոր քաղաքականություն իրականացնելուն: Յուրաքանչյուր կուսկազմակերպություն, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ պետք է մանրամասնորեն քննարկի պլենումի նյութերը: Տեղական պայմաններին համապատասխան հարկավոր է ընտրել տնտեսավարման առավել ընդունելի եղանակը, որ հաշվի առնի արտադրական հարաբերությունների և ինքնակառավարման լայն դեմոկրատացումը:

Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին՝ կարճ ժամկետում մշակել և առաջարկություններ մտցնել հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի կառավարման կառուցվածքը կատարելագործելու վերաբերյալ: Պաշտպանել ագրոարդյունաբերական համալիրի նոր, հեռանկարային կազմավորումները՝ ագրոարդյունաբերական կոմբինատներն ու միավորումները, ագրոֆիրմաները, արտադրական ու գիտաարտադրական համակարգերը, ֆերմերային տնտեսությունները, գյուղատնտեսական կոոպերատիվները և այլն:Լավ կշռադատել և իրականացնել արտասահմանյան պարտնյորների հետ համատեղ ձեռնարկությունների ստեղծումը:

4. Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին, պետագրոարդին, ագրոարդյունաբերական համալիրի մեջ մտնող մինիստրություններին ու գերատեսչություններին՝ ելնելով երկրաշարժից հետո հանրապետությունում ստեղծված իրավիճակից, ձեռնարկել անհետաձգելի լրացուցիչ միջոցներ, որոնք ապահովեն պարենային ապրանքի տարեկան առնվազն 4 տոկոս աճ: Մինչև տասներեքերորդ հնգամյակի վերջը դրանց արտադրությունն ավելացնել 20—25 տոկոսով:

Կոլտնտեսությունների, խորհտնտեսությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների ու մասնագետների ջանքերը կենտրոնացնել հողերի բերրիության և հողագործության կուլտուրայի բարձրացման, հողային ու ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, գիտականորեն հիմնավորված ցանքաշրջանառությունների արմատավորման, անասնապահության զարգացման ու ինտենսիվացման, գյուղատնտեսական աշխատանքների համալիր մեքենայացման լայն



ծրագրի իրագործման վրա: Անհետաձգելի խնդիր համարել վերամշակման արդյունաբերության ու պահպանման բազայի շինարարության, վերակառուցման ու տեխնիկական վերազինման առաջադրանքների ժամանակին կատարումը:

Ելնելով քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունների ու ձեռնարկությունների պահանջմունքներից, կազմակերպել փոքր մեքենայացման միջոցների և վերամշակման արդյունաբերության ու առևտրի սարքավորումների արտադրություն:

Ժողովրդական դեպուտատների քաղաքային խորհուրդներին՝ մշակել և իրացնել «Քաղաքը՝ պտուղբանջարեղենի համալիրին» ծրագիր:

Ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային խորհուրդների գործկոմներին՝ վճռականորեն փոխել վերաբերմունքը կոլեկտիվ այգեգործության, բանջարաբուծության և ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների զարգացման նկատմամբ, մինչև ընթացիկ հնգամյակի վերջը լիովին ապահովել քաղաքացիների այգեհողամասերի պահանջմունքը, տասներեքերորդ հնգամյակի ընթացքում կրկնապատկել պարենամթերքի արտադրությունը բնակչության անձնական տնտեսություններում:

Պարտավորեցնել Հայկոոպի վարչությանն արմատապես բարելավելու Հայսպառկոոպի և տեղերում նրա մարմինների աշխատանքը կոլտնտեսություններից, խորհտընտեսություններից և բնակչությունից գյուղատնտեսական մթերքի մթերման, ենթակա ձեռնարկություններում ու բաժնետիրական հիմունքով նրա վերամշակման կազմակերպման ուղղությամբ: Ընդլայնել գյուղկոոպմթերարդերի, վերամշակման փոքր ձեռնարկությունների ցանցը:

5. Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին, պետշինին, պետագրոարդին, տեղական կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմիններին՝ գյուղի սոցիալական վերափոխման նպատակային ծրագիրն իրագործելիս հասնել նրա համալիր կառուցապատմանը, հաշվի առնելով հայ գյուղացու ավանդական կացութաձևը՝ բոլոր անհրաժեշտ հարմարություններով հանդերձ: Ամենակարճ ժամկետներում լուծել անհատ կառուցողներին հողամասերի հատկացման, նրանց համար նախագծերի մշակման, բնակչությանը շինանյութերի, անասունի, թռչնի վաճառքի կազմակերպման հարցերը:

Առավելագույն ուշադրություն նվիրել գյուղում վերականգնման աշխատանքների ընթացքին: Մինչև ցրտերն ընկնելը մշտական բնակարանով կամ ժամանակավոր կացարանով ապահովել աղետի գոտու բնակչությանը: Առաջնահերթ կարգով մշտական ու ժամանակավոր դպրոցներ կառուցել մինչև նոր ուսումնական տարին:

Վերացնել տնամերձ հողամասերի չափերի, գյուղատնտեսական մասնավոր անասունների քանակի և ջերմոցների շինարարության անհիմն սահմանափակումները: Հաշվի առնելով ժողովրդագրական իրավիճակը, աշխատանքային ռեսուրսների ավելցուկը, անհրաժեշտ է գյուղական վայրերում արագ տեմպերով զարգացնել օժանդակ տնտեսություններն ու արհեստագործությունը:

Մինչև 1998 թվականը յուրաքանչյուր գյուղական ընտանիքի համար ապահովել առանձին բարեկարգ բնակարան կամ բնակելի տուն, իսկ 2000 թվականին գյուղական մեկ բնակչի բնակարանային ապահովվածությունը հասցնել 21 քառակուսի մետր ընդհանուր տարածության: Մինչև 1995 թվականի վերջը լուծել գյուղերն ու շրջկենտրոնները բնական գազով, խմելու ջրով, կոյուղու համակարգով ապահովելու հարցերը, բավարարել գյուղական բնակչության հեռախոսի պահանջմունքը:

1989—1990 թվականների ընթացքում յուրաքանչյուր գյուղական շրջանում ամրապնդել տեղական շինարարական կազմակերպությունների, ինչպես նաև շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունների նյութատեխնիկական բազան:

6. Պետագրոարդին, գիտությունների ակադեմիային, համապատասխան ճյուղային գիտահետազոտական և նախագծային ինստիտուտներին՝ գիտնականների ու մասնագետների կոլեկտիվների ջանքերը նպատակամղել գյուղատնտեսական արտադրության զարգացման պրոբլեմներին նվիրված հետազոտությունների համակողմանի բարելավմանն ու ընդլայնմանը, դրա ինտենսիվացմանը, մթերքի արտադրության և պահպանման անթափոն տեխնոլոգիայի ստեղծմանը: Ապահովել արտադրության հետ գիտական մշակումների սերտ փոխգործակցություն: Բարձրացնել գիտական հետազոտությունների արդյունավետությունը էկոնոմիկայի, կենսատեխնոլոգիայի, գյուղատնտեսական գենետիկայի, էկոլոգիայի ասպարեզում: Միջոցներ ձեռնարկել գյուղատնտեսական մթերքի արտադրության ավելացման և դրա նկատմամբ բնակ-

չության պահանջարկի ապահովման կոնկրետ խնդիրների լուծման համար գիտաարտադրական համակարգերի, միավորումների և համալիրների հետագա զարգացման նպատակով: Մինչև 1990 թվականի սկիզբն իրականացնել ագրոարդյունաբերական համալիրի բոլոր գիտական ստորաբաժանումների անցումը տնտհաշվարկի սկզբունքների:

7. Կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին՝ հասնել այն բանին, որ կոմունիստները, բոլոր աշխատավորները լիովին գիտակցեն հանրապետության ագրոարդյունաբերական համալիրում ստեղծված իրադրության բարդությունը, առավելագույնս օգտագործեն առկա ռեզերվները: Գյուղական ոչ մի կոմունիստ, ագրոարդյունաբերական համալիրի ոչ մի աշխատող չպետք է անմասն մնա կուսակցության արդի ագրարային քաղաքականության իրականացումից, բնակչության պարենավորման գործի արմատական բարելավումից:

Կուսակցական կոմիտեները պետք է փոփոխված իրադրության մեջ անհրաժեշտ ճկունություն դրսևորեն մարդկանց հետ տարվող աշխատանքում, լիարժեք օգտագործեն նրանց ուժերը վերակառուցման իրականացման, սոցիալ-տնտեսական զարգացման կուտակված բազմաթիվ խնդիրների լուծման համար:

Անհրաժեշտ է իրականացնել ժողովրդական դեպուտատների տեղական խորհուրդների դերը պարենային պրոբլեմի լուծման, գյուղի աշխատավորների սոցիալական ապահովման, էկոլոգիական իրավիճակի առողջացման գործում:

Ուժեղացնել ագրոարդյունաբերական համալիրի կադրերի հետ տարվող աշխատանքը: Արտադրության կարևորագույն տեղամասերն ամրապնդել քաղաքականապես հասուն, բանիմաց ղեկավարներով ու մասնագետներով: Ղեկավար պաշտոնների առաջ քաշելիս ավելի լայնորեն օգտագործել հրապարակայնությունն ու մրցութային սկզբունքը, հասնել տնտեսությունների ղեկավարների կայունությանը, կազմակերպել վարձակալողների ու կոոպերատորների ուսուցում:

Ելնելով հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման հրատապ խնդիրներից, կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականության գլխավոր ուղղություններից, կատարելագործել աշխատավորների քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը:

8. Արհմիութենական, կոմերիտական, ստեղծագործական, մյուս հասարակական կազմակերպությունները պետք է ակտիվ մասնակցություն ցուցաբերեն ագրոարդյունաբերական համալիրի զարգացման խնդիրների լուծմանը, գյուղի աշխատավորի աշխատանքի, կենցաղի և հանգստի պայմանների բարելավմանը:

Հարկավոր է ամենուրեք ստեղծել կուլտուր-մարզական համալիրներ, մանկական նախադպրոցական հիմնարկներ, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման և առողջապահության օբյեկտներ, դրանով իսկ նպաստել երիտասարդության ներգրավմանն ու ամրացմանը գյուղում:

9. Հանրապետական թերթերի ու հանդեսների խմբագրություններին, Հայաստանի պետհեռուստառադիոյին՝ բարձրացնել հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի զարգացման կոնկրետ պրոբլեմներին վերաբերող հրապարակումների ու հաղորդումների բովանդակալիությունը, օպերատիվությունը, ուշադրությամբ ուսումնասիրել գյուղատնտեսության մեջ տեղի ունեցող նորարարական պրոցեսները, դրանք հասցնել լայն զանգվածներին: Վճռականորեն բացահայտել պարենային ռեսուրսների ավելացման, ռեզերվների օգտագործման ասպարեզում թույլ տրված թերությունները ու վրիպումները:

***

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը հանրապետության կոմունիստներին, բոլոր աշխատավորներին կոչ է անում ակտիվորեն ներգրավվել արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականության իրագործմանը, տնտեսական հարաբերությունների վերակառուցմանը, գյուղի սոցիալական ոլորտի վերափոխմանը: Պլենումը վստահություն է հայտնում, որ գյուղի աշխատավորները, կենսագործելով ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի մարտյան պլենումի քաղաքական կուրսը, կհաղթահարեն էկոնոմիկայի ագրարային հատվածում տեղ գտած լճացման երևույթները, ակտիվորեն կներգրավվեն հանրապետության գաղափարաբարոյական իրադրության նորացման պրոցեսի մեջ, առավելագույն ջանքեր կգործադրեն հանրապետության բնակչության պարենավորման արմատական բարելավման համար:

---

# ԴԵՄՈԿՐԱՏԱՑՄԱՆ ՈՒ ԱՐԱՐՄԱՆ ՀՈՒՆՈՎ

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ զարգացման արդի փուլը բնորոշվում է հեղափոխական վերակառուցման նշանաբանով, որն ընդգրկել է մեր կյանքի բոլոր կողմերը: Վերակառուցման հեղափոխական էությունն առավելապես դրսևորվեց ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում:

Համագումարը, լսելով և քննարկելով ԽՍՀՄ ներքին ու արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունների մասին Մ. Ս. Գորբաչովի և կառավարության առաջիկա գործունեության ծրագրի մասին Ն. Ի. Ռիժկովի զեկուցումները, արձանագրեց, որ երկիրն ապրում է իր պատմության բացառիկ պատասխանատու ժամանակաշրջանը, որից կախված են վերակառուցման բախտը, մեր բազմազգ հայրենիքի ապագան:

Հասարակական կյանքի բոլոր կողմերի խոր վերակառուցումը կոչված է երկիրը դուրս բերելու այն ճգնաժամից, որի մեջ նա հայտնվեց 80-ական թվականների սկզբին, վճռականորեն ազատվելու այն ամենից, ինչն արգելակում է երկրի զարգացումը, խորհրդային հասարակության առջև բացելու հասարակական առաջադիմության նոր հորիզոններ:

Առաջին անգամ հրապարակայնորեն սկզբունքային խոսակցություն ծավալվեց կուտակված պրոբլեմների, ներքին ու արտաքին քաղաքականության հանգուցային հարցերի մասին, հնարավոր դարձավ համադրել տարբեր կարծիքներ, տարբեր դիրքորոշումներ: Անկաշկանդ բացախոսությունը ստիպեց վերաիմաստավորել շատ արժեքներ, մաքրել դրանք տարբեր շերտանստվածքներից ու ձևախեղումներից:

Մեր կյանքի բոլոր ոլորտներում տեղի են ունենում փոփոխություններ, մեծանում են ակտիվությունը, շահագրգռությունը, զարգանում ու խորանում է կարծիքների բազմակիությունը: Այսօր մարդիկ գոհունակությամբ են արտահայտվում դատողությունների հրապարակայնության, բացախոսության, ուրիշների կարծիքի նկատմամբ հանդուրժողության մասին, հանրապետությունում հեղափոխական վերափոխումներն արագացնելու, մեր սոցիալիստական հայրենիքն ավելի հարուստ, հզոր, վերակառուցման խնդիրների իրագործման և իրավական պետության կառուցման գործում նպատակամետ դարձնելու ցանկության մասին: Ավելի ու ավելի են կառավարման վարչահրամայական լծակների փոխարեն առաջին պլան մղվում տնտեսագիտական լծակները: Սրա մեջ հստակորեն երևում են նորի, այն բանի ծիլերը, ինչն ընձեռել են վերակառուցումն ու նոր մտածողությունը, անցյալի լուրջ սխալների ըմբռնումը, որոնք արգելակել էին մեր զարգացման տեմպերը, նյութական ու բարոյահոգեբանական վնաս հասցրել ամբողջ սերունդների:

Համագումարում շահագրգիռ խոսակցություն ծավալվեց ազգամիջյան հարաբերությունների շուրջը: Մ. Ս. Գորբաչովն իր զեկուցման մեջ հատկապես շեշտեց, որ վերակառուցման սկզբնական փուլում ինչպես հարկն է ուշադրություն չդարձվեց ազգային հարցերին և նման մոտեցումը պետք է փոխվի այսօր:

Ստալինյան հակաժողովրդական քաղաքականությունը, լճացման տարիների բարեհոգի անտարբերությունը մարդկանց մեջ հարուցել էին ներքին խոր դժգոհություն ազգային հարցի խեղաթյուրումների վերաբերյալ: Պատահական չէ, որ նոր վերափոխումների ալիքն այս բնագավառում բարձրացավ հենց ներքևից, ժողովրդի կողմից ու նրա նախաձեռնությամբ: Այդ բարդ ու ցավագին խնդրին մերժելի մեթոդներով մոտենալու փորձերը, սոցիալական նոր վերափոխումների շնորհիվ ձերբազատված ազգային ինքնագիտակցության անտեսումը և ազգային բնույթի հրատապ պրոբլեմների լուծման ձգձգումը միմիայն վնաս կարող է բերել վերակառուցմանը: Այդ առնչությամբ հույժ կարևոր է նաև հստակ տարբերել ազգի շահերն ազգային երեսպաշտությունից, ազգային արժանապատվության պաշտպանությունը՝ ազգայնականությու-

մից, զգացմունքների դրսևորման սոսկ հուզական ձևը՝ ծայրահեղականությունից: Ազգային պրոբլեմների լուծումը, ինչպես նշվեց համագումարում, պահանջում է համարձակ և միևնույն ժամանակ վայելուչ ու հարգալից վերաբերմունք:

Մեզ համար առաջնահերթ լուծում պահանջող հարցը ազգայինն է, քանզի այն դարձել է մարդկանց սոցիալական անբավարարվածության, հոգևոր ու ազգային անպաշտպանվածության դրսևորումների կիզակետը: Ելնելով դրանից, Հայաստանից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատները շիտակ, սկզբունքային դիրքերից ներկայացրին հանրապետությունում և ռեգիոնում ստեղծված իրավիճակն ու մարդկանց դըժգոհությունների պոռթկման իրական պատճառները: ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատ Ս. Գ. Հարությունյանն իր ելույթում նշեց, որ առաջին անգամ այդքան հեղինակավոր համաժողովում համակողմանիորեն մարդկանց ու աշխարհին ներկայացվեց մեր ժողովրդի հոգսն ու ցավը: Ամեն ինչ արվեց, որպեսզի մեզ խորապես հուզող պրոբլեմների շուրջը ճիշտ հասարակական կարծիք ստեղծվի, դրանք ճանաչելի և ընդունելի դառնան բոլորին: Առանց տուրք տալու շատերի մեջ տիրող կանխակալ կարծիքներին, ցույց տրվեց, որ Լեռնային Ղարաբաղի հարցն արհեստականորեն տարածքային կովախնձոր դարձնելը կամ դրա տարբեր տիպի նենգափոխումներն անհարիր են թե՛ լենինյան ազգային քաղաքականության սկզբունքներին, թե՛ վերակառուցման տրամաբանությանն ու բովանդակությանը:

Համագումարը բացախոսության ու ճշմարտացիության բազում օրինակներ տվեց: Այն վկայեց, որ անհրաժեշտ է ոչ թե շեշտը դնել կեղծիքի ու հասարակությանը թյուրիմացության մեջ գցելու վրա, այլ սթափ ու իրատեսորեն գնահատել պրոբլեմը, թեև նման ամեն քայլ տակավին հանդիպում է սոսկ անգուշակելի հետևանքների մասին երկիմաստ դատողությունների: Համագումարում Գերագույն խորհրդի կազմում Լեռնային Ղարաբաղի ներկայացուցիչների անօրինական առաջադրման արդյունքների բեկանումը ոչ միայն ցույց տվեց դեպուտատների սկզբունքային դիրքորոշումը, այլև հավաստեց, որ հարկավոր է վերջ դնել մարզի սուվերեն իրավունքների բացահայտ ոտնահարման հին հոգեբանությանն ու գործելակերպին:

Երկրի տարբեր ռեգիոնները ներկայացնող դեպուտատները բազմիցս անդրադարձան Լեռնային Ղարաբաղի պրոբլեմին, փորձեր արվեցին առաջադրել դրա լուծման ուղիներ:

Հանրապետության դիրքորոշումն այն է, որ հենց մարզի բնակչությունն ինքը, հանրաքվեի միջոցով, կամքի ազատ արտահայտմամբ վճռի իր բախտը: Մեր դեպուտատները թե՛ համագումարի ամբիոնից, թե՛ հետագայում այն համոզմունքն են հայտնել, որ Լեռնային Ղարաբաղում պետք է վերականգնել կուսակցական ու խորհրդային ղեկավար մարմինների ֆունկցիաները, իսկ հատուկ կառավարման կոմիտեին օժտել այնպիսի իրավունքներով, որ ի վիճակի լինի ապահովել մարզի լիիրավ ինքնուրույնությունը և ենթակայությունը կենտրոնին:

Այսօր հրատապ խնդիր է Արցախի հարցի արդարացի լուծման ասպարեզում հանդես բերել ոչ միայն հետևողականություն, այլև մեր հայրենակիցներին գործնական օգնություն կազմակերպել, աջակցել մարզի սոցիալ-տնտեսական և հոգևոր ոլորտների զարգացմանը: Այս առնչությամբ Հայկական ԽՍՀ տասնմեկերորդ գումարման Գերագույն խորհրդի իններորդ նստաշրջանը քննարկեց «Հանրապետության խորհրդային և տնտեսական մարմինների կողմից Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի վերաբերյալ ԽՄԿԿ Կենտկոմի, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների կատարման ընթացքի մասին» հարցը:

Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի կոմպլեքսային լուծման ճանապարհին կատարված առաջին քայլերը եղան ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի 1988 թվականի մարտի 24-ի որոշումը «1988—1995 թվականներին Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու միջոցառումների մասին» և ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության հրամանագիրը Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում կառավարման հատուկ ձև սահմանելու մասին: ԼՂԻՄ-ի վերաբերյալ ԽՄԿԿ Կենտկոմի ու ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման ընդունման բուն փաստը վկայում է Լեռնային Ղարաբաղի կյանքի բոլոր բնագավառներում ստեղծված խիստ աննպաստ դրության մասին: Ադրբեջանական ԽՍՀ-ի ղեկավարության վարած քաղաքականությունը մարզում արտառոց վիճակ է ստեղծել ինչպես տնտեսական, այնպես էլ սոցիալական ոլորտներում, հանգեցրել



Արցախի հայ բնակչության մշակութային լիակատար մեկուսացմանն ու հոգևոր ճընշմանը:

Տակավին անցյալ տարի ՀԿԿ Կենտկոմը և Հայաստանի կառավարությունը հաստատել են ԼՂԻՄ-ի օգնության պետական ծրագիր, որը բովանդակում է ԽՄԿԿ Կենտկոմի ու ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը կատարելու, ինչպես նաև հանրապետության ձեռնարկությունների ու կազմակերպությունների կողմից նախաձեռնողական օգնություն ցույց տալու մի շարք միջոցառումներ:

Չնայած այս ուղղությամբ արդեն որոշակի գործ արվել է, սակայն հանրապետական մինիստրություններն ու գերատեսչությունները անբավարար մասշտաբներով ու դանդաղ տեմպերով են կատարում ԼՂԻՄ-ի վերաբերյալ ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը: Մի շարք հարցեր լուծելիս հանդես է բերվում անպատասխանատվություն, բացակայում են անհրաժեշտ օպերատիվությունը և հետևողականությունը: Աշխատանքները անբավարար են ծավալում հանրապետության պետշինի շինարարական կազմակերպությունները: Հարկավոր է, որ պետշինը բարձրացնի շինարարական կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունը, կոմպլեքսային միջոցառումներ իրականացնի շինմոնտաժային աշխատանքների տարեկան ծրագրի պարտադիր կատարումն ապահովելու, պլանավորված օբյեկտները շահագործման հանձնելու, 1990 թվականի խնդիրների իրականացման համար հուսալի բազա ստեղծելու նպատակով:

Աններելի դանդաղկոտություն են հանդես բերում նաև «Հայջրշին» մասնագիտացված շինարարական միավորումը, պետագրոարդը, «Հայձնիկ» արտադրամիավորումը, թեթևարդմինը, սպասարկպետկոմը և հանրապետության մի շարք արտադրական միավորումներ, կազմակերպություններ ու ձեռնարկություններ: Առանձին շրջանների և քաղաքների խորհրդային ու տնտեսական մարմիններ հարկ եղած նախաձեռնությունը հանդես չեն բերում ԼՂԻՄ-ին բազմակողմանի օգնություն կազմակերպելու գործում, թույլ են կոորդինացնում համապատասխան ստորաբաժանումների ջանքերը: Դանդաղ տեմպերով, հաճախ էլ անբավարար են կատարվում այն հանձնարարականները, որ նշված որոշումներով դրված են միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների, ինչպես նաև Ադրբեջանի համապատասխան կազմակերպությունների առջև: Ընթացիկ տարում նախատեսված 96 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներից հինգ ամսում իրացվել է ընդամենը 12,5 միլիոն ռուբլի:

Ակնհայտ է, որ ընդունված փաստաթղթերի հանձնարարականները կատարվում են անբավարար ու ոչ լրիվ ծավալով: Դրա հետևանքով ԼՂԻՄ-ի բնակչությունը թերահավատություն է հանդես բերում այն ամենի նկատմամբ, ինչը նախատեսված է այդ որոշումներում, իսկ դա իր հերթին հանգեցնում է ռեգիոնի առանց այն էլ բարդ իրադրության սրմանը: Նկատենք նաև, որ Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ որոշումների իրականացման անբավարար տեմպերը պայմանավորված են թե՛ օբյեկտիվ, թե՛ սուբյեկտիվ մի շարք պատճառներով:

Ահավոր երկրաշարժը հսկայական բարոյական ու նյութական վնաս հասցրեց և խիստ ջլատեց հանրապետության հնարավորություններն ու միջոցները: Բնական է, որ մեր բոլոր ջանքերը նպատակամղվեցին տարերային աղետի հետևանքների վերացմանը, որոնք կազմում են ավելի քան 12 միլիարդ ռուբլի: Այս ամենը խիստ սահմանափակեց հանրապետության կողմից Լեռնային Ղարաբաղին ցույց տրվող օգնության մասշտաբները, նկատելիորեն դանդաղեցրեց նախատեսված միջոցառումների իրականացման տեմպերը:

Այնուհանդերձ, չի կարելի հաշտվել այն փաստերի հետ, որ հանրապետության որոշ մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների անպատասխանատվության ու դանդաղկոտության, կառավարության անհրաժեշտ վերահսկողության և պահանջկոտության բացակայության պատճառով ձախողվում են ինքնավար մարզի համար սոցիալ-տնտեսական հսկայական նշանակություն ունեցող մի շարք կարևորագույն միջոցառումներ:

Առաջադրված խնդիրների իրականացման գործում լուրջ արգելք է դարձել այն, որ մեզ չի հաջողվել ու չի հաջողվում նորմալ կապեր հաստատել ԼՂԻՄ-ի հետ: Մենք ձգտել և ձգտում ենք ռեգիոնի իրադրության նորմալացմանը, կոնստրուկտիվ լուծումներ գտնելուն: Սակայն արդյունքներն ավելի քան համեստ են: Համարյա այն բոլոր հարցերի առնչությամբ, որոնցով հանրապետության կառավարությունը, մինիստրություններն ու գերատեսչությունները դիմում են Ադրբեջանական ԽՍՀ համապատասխան մարմիններին. հանդիպում են անանցանելի պատնեշների: Դրանք,

որպես կանոն, մերժվում են, երբեմն էլ նույնիսկ առաջացնում հանիրավի մեղադրանքներ: Ասենք նաև, որ նախատեսված բոլոր միջոցառումների հաջող իրականացմանը ամենևին էլ չնպաստեց ժողովրդական դեպուտատների մարզային խորհրդի, կուսմարզկոմի, աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների լիազորությունների դադարեցումը:

ԼՂԻՄ-ի հատուկ կառավարման կոմիտեն իրականում առայժմ մեծամասամբ զբաղվում է ազգամիջյան հարաբերությունների հարցերով, փաստորեն զրկված է ինքնավար մարզի արտադրողական ուժերի ավելի արագ զարգացման, ժողովրդական տնտեսության արմատական վերակառուցման համար միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների, երկու միութենական հանրապետությունների օգնությունը ներգրավելու հնարավորությունից:

Կարևոր է, ինչպես նշվեց վերջերս ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ազգամիջյան հարցերի հանձնաժողովի նիստում, ընդլայնել հատուկ կառավարման կոմիտեի լիազորությունները՝ նրան ռեալ իրավունքներ տալով ինքնուրույնաբար լուծելու ինքնավար մարզի կենսականորեն կարևոր բոլոր հարցերը: Ստեղծված ճգնաժամային իրադրության մեջ հարկավոր է գտնել պրոբլեմի լուծման առավել արդյունավետ ուղիներ: Անհրաժեշտ են առկա բարդ վիճակից դուրս գալու ռեալ քայլեր: Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի քաղաքական լուծման սկզբունքային ուղին ազգամիջյան հարաբերությունները վերակառուցելու կուսակցության ներկայիս ստանձնած կուրսն է: Հարկավոր է գտնել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի պրոբլեմի լուծման այնպիսի ուղիներ, որոնք հնարավորություն ընձեռեն սահմանադրական ճանապարհով կարգավորելու վիճելի հարցերը, որպեսզի ինքնորոշման շրջանակներում մարզի ազգաբնակչությունը կամքի ազատ արտահայտման միջոցով վճռի իր բախտը:

Վերակառուցումը շոշափեց նաև մեր հանրապետության կյանքի բոլոր կողմերը: Ու եթե չլինեին այն ցնցումներն ու բարդությունները, որոնցում հայտնվեց հայ ժողովուրդը, կարելի է վստահությամբ ասել, որ արդյունքներն էլ այլ կլինեին: Հայաստանում շատ աղետներ համընկան ընթացիկ հնգամյակի տարիներին: Փաստերը վկայում են, որ մարդկանց զգալի մասի մտածողության և գործելակերպի մեջ եղած լճացումը, առանձին աշխատողների կողմից հանձնարարված տեղամասի համար ժողովրդի հանդեպ ունեցած պատասխանատվության կորուստը հանրապետությունում ավելի պարզորոշ դրսևորվեցին, քան մյուս ռեգիոններում, որի հետևանքով զարգացան ավելի խոր ճգնաժամային երևույթներ, տեղիք տալով քաղաքացիների դժգոհությանը:

Հնգամյակի սկզբից և մանավանդ անցած ու ընթացիկ տարիներին ազգամիջյան հողի վրա և մարդկանց մեծ գաղթի, աշխատանքային կարգապահության խախտման ու մասսայական գործադուլների պատճառով տեղի ունեցած իրադարձություններն ու հուզումները հանգեցրին նրան, որ հանրապետությունը շատ ցուցանիշներով չկատարեց տնտեսական և սոցիալական զարգացման պլանները:

Ազգային եկամտի և արդյունաբերական արտադրության ծավալների աճի փաստական տեմպերը զգալիորեն դանդաղ են պլանավորվածից, որի հետևանքով երեք տարում հնգամյա պլանի առաջադրանքները թերակատարվել են համապատասխանաբար 7,7 և 4,4 տոկոսով:

Հանրապետությունում արտադրության ինտենսիվացման աճի վրա էական ազդեցություն չգործեցին նաև տնտեսավարման նոր պայմանները, որոնցում աշխատող յուրաքանչյուր երկրորդ ձեռնարկություն չի կատարում իր պայմանագրային պարտավորությունները: 1986—1989 թվականներին արդյունաբերական արտադրանքի հավելաճը կկազմի մոտավորապես 7,3 տոկոս՝ հնգամյա պլանով նախատեսված 21,5 տոկոսի դիմաց: Մեքենաշինական համալիրում չորս տարվա ընթացքում սպասվում է 12,7 տոկոս արտադրության հավելաճ՝ հնգամյակի առաջադրանքով նախատեսված 44,5 տոկոսի դիմաց:

Խիստ անբավարար են կատարվում պլանները կապիտալ շինարարության մեջ: Հնգամյակի երեք տարում տարեկան պլանների համեմատ պակաս են օգտագործվել 555 միլիոն ռուբլի ծավալով կապիտալ ներդրումներ, այդ թվում չեն կատարվել 299 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ: Դրա հետևանքով ձախողվել է 370 հազար քառակուսի մետր բնակմակերեսի, 4,1 հազար աշակերտական տեղով հանրակրթական դպրոցների, 13,1 հազար տեղով նախադպրոցական հիմնարկների, 1280 մահճակալով հիվանդանոցների, հերթափոխի ընթացքում 2220 հաճախման հա-



մար նախատեսված պոլիկլինիկաների և արտադրական ու սոցիալական նշանակության մի շարք ուրիշ օբյեկտների գործարկումը:

Հնգամյակի համար սահմանված տեմպերից հետ են մնացել գյուղատնտեսության համախառն արտադրանքի հավելաճի տեմպերը: Պլանները չեն կատարել Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքը և ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունը: Մանրածախ ապրանքաշրջանառության ծավալի աճի հնգամյա պլանի երեք տարվա առաջադրանքը թերակատարվել է 2,9 տոկոսով:

Այդ ամենի հետևանքով պակասել ու պակասում է արտադրության արդյունավետությունը, շատ ձեռնարկություններ հայտնվել են ֆինանսական ծանր վիճակում, չի պահպանվում հարաբերակցությունը աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի միջև: Խախտվել է դրամաշրջանառությունը, մեծացել է էմիսիան: Ստեղծված իրավիճակում, եթե դրությունը չշտկվի, պլանային առաջադրանքների թերակատարում է սպասվում: Հանրապետության ձեռնարկությունների արտադրանքի սպառողները կորցրել են հավատը մատակարարումների կայունության հանդեպ, իրավացիորեն դժգոհում են ցածր որակից, զրույցների ժամանակ ուղղակի ասում են, որ իրենք չեն ճանաչում մեր բանվորների ձեռքերով պատրաստված շատ արտադրատեսակներ: Այս ամենը ցույց է տալիս, որ եթե մոտ ժամանակներս բեկում չլինի արդյունաբերական աշխատանքում, չբարելավվի գործերի վիճակը կապիտալ շինարարության մեջ, ապա պլանների թերակատարումը կխորանա: Դա անխուսափելիորեն կվատացնի հանրապետության ֆինանսական կացությունը: Բյուջեն շահույթից միլիոնավոր ռուբլիների վճարումներ պակաս կստանա, էլ ավելի կխախտվի դրամաշրջանառությունը, կդանդաղի հանրապետության տնտեսական զարգացումը, ինչն անխուսափելիորեն կանդրադառնա աշխատավորների կենսամակարդակի վրա, կառաջանա փակուղի, որից դուրս գալը շատ դժվար կլինի: Անշուշտ, մարդիկ դրան չեն համաձայնի:

Հրապարակայնության և դեմոկրատացման շրջանում պետք է արագ տեմպերով աճի յուրաքանչյուրի աշխատանքային ավանդը, ամրապնդվի կարգապահությունն ու կազմակերպվածությունը, պատասխանատվությունը հասարակության և աշխատանքային ընկերների հանդեպ: Բնականաբար, պայմանագրային պարտավորությունների կատարումը պետք է օրենք դառնա: Առանց դրա պարզապես անհնար կլինի բարձրացնելու էկոնոմիկան:

Մինչև տարեվերջ մնացած ամիսները պետք է նպատակահարմար օգտագործել պլանների թերակատարումը հաղթահարելու համար: Ոչ մի արդարացում չի կարող լինել աշխատավորական և ոչ մի կոլեկտիվից, եթե նա չկատարի տարվա պլանը:

Հայկական ԽՍՀ տասնմեկերորդ գումարման Գերագույն խորհրդի իններորդ նստաշրջանը հանգամանորեն քննարկեց Հայկական ԽՍՀ-ում երկրաշարժի հետևանքների վերացման վերաբերյալ ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների կատարման ընթացքի մասին հանրապետության կառավարության նախագահ Վ. Ս. Մարգարյանցի զեկուցումը: Այդ հույժ կենսական խնդրի քննարկումն օգնեց բազմակողմանիորեն վերլուծելու արվածը և վերականգնման գործում մեր հետագա անելիքները: Երկրաշարժի հետևանքների վերացմանն ուղղված անցած ամիսների, հատկապես վերջին շրջանի գործունեությունը մարդկանց ներշնչեց հավատ ու վստահություն, որ ավերվածը կվերականգնվի հնարավորին չափ արագ, կյանքը կմտնի բնականոն հունի մեջ: Այժմ անհրաժեշտ է հաշվարկներ անել յուրաքանչյուր գործարանի ու ֆաբրիկայի, շինարարական և մյուս կազմակերպությունների աշխատավորական կոլեկտիվների հետ, համաձայնության գալ, որ նրանք աշխատեն շաբաթ օրերին, երկարացված հերթափոխություններով՝ թերի գործը լրացնելու համար:

Այժմ համալիր միջոցառումներ են իրականացվում մեր քաղաքներից ու գյուղերից երկրի տարբեր հանրապետությունների հանգստյան գոտիները տեղափոխված ընտանիքների ժամանակավոր բնակեցումը մինչև հոկտեմբեր երկարացնելու համար: Կազմակերպվում է հաշմանդամ, հարազատներին կորցրած ու տուժած մյուս մարդկանց, առաջին հերթին մանուկների ու դպրոցականների բուժման, ինչպես նաև հանգստի կազմակերպման գործը արտասահմանյան երկրների, Միության լավագույն կլինիկաներում ու առողջարաններում: Մեր հայրենակիցների սոցիալական ու հոգեբանական կարգավիճակի վերականգնմամբ հարկ կլինի տարիներ զբաղվել: Տասնյակ հազարավոր մարդիկ դեռևս հոգեկան ցնցման մեջ են: Ուստի մեր առաջնահերթ խնդիրն է վերականգնողական կենտրոնների արագ ստեղծումը:

Հետևողական աշխատանք է տանում ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնա-

Հանրապետության առջև ծառացած բարդ ու բազմազան պրոբլեմների լուծման գործում մեծ դեր կարող են կատարել արտաքին տնտեսական կապերը, դրանց նոր բնույթ ու բովանդակություն հաղորդելը։ Վերակառուցումը, մեր երկրի որդեգրած քաղաքական նոր մտածողությունը ամենանպաստավոր պայմաններ են ստեղծել դրա համար։ Արտասահմանյան երկրների հետ համագործակցության առավել բարենպաստ նախադրյալներ կան մեր հանրապետությունում։ Տասնյակ երկրներ ու կազմակերպություններ ոչ միայն երկրաշարժի վերքերի բուժման գթասիրտ օգնություն են ցույց տալիս, այլև տևական համագործակցության ծրագրեր են առաջարկում։ Հանրապետության վերածննդին մեծ նվիրումով են ցանկանում մասնակցել արտասահմանի մեր հայրենակիցները։ Այս իրավիճակում, հաշվի առնելով նաև մեզանում առկա ռեսուրսներն ու հնարավորությունները, կարևոր ու հեռանկարային նշանակություն է ստանում ազատ տնտեսական գոտու կազմակերպումը։ Հայտնի է, որ այդ պրոբլեմի շուրջը արտահայտվեցին համագումարում, չնայած դեռևս երկրում չկա համապատասխան փորձ։ Հետևաբար դա պահանջում է համակողմանի ու լուրջ նախապատրաստական աշխատանք։ Անհրաժեշտ է, որպեսզի հանրապետության կառավարությունը արագ ձեռնամուխ լինի ազատ տնտեսական գոտու կազմակերպման հատուկ ու կոնկրետ ծրագրի մշակմանը՝ ներգրավելով Միության, անհրաժեշտության դեպքում նաև արտասահմանի առաջատար մասնագետների։

Սումգայիթի ողբերգական իրադարձություններից հետո մեր բառապաշարում նորից հայտնվեց «փախստական» տագնապալի բառը։ Եվ ոչ միայն բառը. 202 հազար հայեր ստիպված եղան թողնել Ադրբեջանի իրենց օջախները։ Անապաստան փախստականների առկայությունն իր կնիքն է դնում հասարակական կլիմայի վրա, սրում մարդկանց ազգային անպաշտպանվածության զգացումը։ Որքան էլ որ բարդ է գաղթականների պրոբլեմը, այն պետք է անհապաղ լուծել։ Միութենական կառավարության միջոցով սկզբունքորեն լուծվեց մշտական բնակության վայրերը հարկադրաբար թողած հայ ազգաբնակչության աշխատանքի տեղավորման, բնակարանների հատկացման ու փոխանակության, անհատական տների շինարարության, այդ նպատակով հողամասերի ու վարկերի հատկացման և այլ կարգի օժանդակություն ցույց տալու բազմաթիվ հարցեր։ Միութենական կառավարությունը մշակել է նրանց կրած նյութական վնասի փոխհատուցման կարգը։ Հանրապետության Մինիստրների խորհրդում փախստականների հարցերով զբաղվող հատուկ վարչություն է ստեղծված։

Չնայած այս ուղղությամբ որոշակի գործ արված է, այդուհանդերձ անհրաժեշտ է, որպեսզի փախստականներով զբաղվող հանրապետական հանձնաժողովը, սթափ գնահատելով իրավիճակը, ամեն ինչ անի շուտափույթ կարգավորելու մարդկանց մտահոգող լուրջ ու ցավոտ հարցերը։ Մեր առաջնահերթ խնդիրն է, որ հանրապետության ամեն մի գերատեսչություն ու կազմակերպություն, յուրաքանչյուր պատասխանատու ու շարքային աշխատող բարոյական ու քաղաքացիական պարտքի խոր զգացումով զորավիգ լինի թեթևացնելու մեր հայրենակիցների դժվարին վիճակը։

Հանրապետության աշխատավորներին հուզող ամենալուրջ պրոբլեմներից է շրջակա միջավայրի անմխիթար վիճակը։ Տարիներ շարունակ արտադրողական ուժերի զարգացման ու տեղաբաշխման բնագավառում թույլ տրված կոպիտ սխալները, արտադրության տեխնիկական ու տեխնոլոգիական ցածր մակարդակը, առանձին վարչարարների հանցավոր անտարբերությունը հանգեցրել են աղետալի հետևանքների։ Անտարակույս, այստեղ բացահայտորեն դրսևորվել են գերատեսչական անտարբերությունը և իշխանության տեղական մարմինների անճարակությունը։ Հետևանքը եղավ այն, որ Հայաստանում էկոլոգիական իրադրությունը խստորեն սրվեց և պահանջում է անհապաղ միջոցների ձեռնարկում։ Այդ պրոբլեմներն առանձնակի ուժով դրվեցին համագումարում ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների ելույթներում, մամուլի մի շարք հրապարակումներում, հասարակայնության անունից ուղղված դիմումներում։ Այսօր հանրապետության ղեկավարությունը և ողջ հասարակայնությունը Հայաստանի լիակատար էկոլոգիական առողջացման, մարդկանց ու շրջակա միջավայրի համար վնասակար արտադրությունների փակման ու վերափոխման ուղի են բռնել։ Էկոլոգիական պրոբլեմների լուծման գործում մեր ելակետը և միակ չափանիշը մարդկանց առողջությունն է, ժողովրդի կյանքի, աշխատանքի ու հանգստի ամենանպաստավոր պայմանների ստեղծումը։ Այսպես դրեց խնդիրը Հայկական ԽՍՀ տասնմեկերորդ գումարման Գերագույն խորհրդի իններորդ նստաշրջանը։



ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարն առանձնահատուկ ուշադրություն դարձրեց ազգային հարցին, ազգամիջյան հարաբերությունների արդի վիճակին և ազգային քաղաքականությունը սկզբունքորեն նորացնելու քաղաքական այնպիսի մեխանիզմ ստեղծելու անհրաժեշտությանը, որը կարող է ապահովել խելամիտ և արդարացի մոտեցումը ազգամիջյան հարաբերությունների հարցերի նկատմամբ։ Խորհրդային բազմազգ պետության ֆեդերատիվ կառուցվածքը պետք է հագեցվի քաղաքական և տնտեսական ռեալ բովանդակությամբ։ Հրատապ, կենսական խնդիր է ազգային հարաբերությունների լիակատար առողջացումը, դրանց ձերբազատումը այն ամենից, ինչը հակասում է մեր բարոյականությանն ու գաղափարախոսությանը, սոցիալիզմի մարդասիրական սկզբունքներին։

Վերակառուցումը հնարավոր դարձրեց նաև ազգային հիշողության զարթոնքը։ Ազգային ինքնագիտակցությունն այսօր նոր որակ է ստանում, ազատվում կեղծիքից ու նենգափոխումներից։ Հասարակական կյանքի դեմոկրատացումը, ազգային ոգու զարթոնքը վերստին եկան ապացուցելու, որ պատմությունը ժողովրդի հավաքական հիշողությունն է, նրա կենսագրությունը։ Առանց պատմական հիշողության չի կարող լինել քաղաքակիրթ ժողովուրդ։

ՀԿԿ Կենտկոմը կոչ է վերցրել անվարան ու հետևողականորեն վերականգնելու պատմական ճշմարտության ողջ շղթան։ Հիրավի, մեր ժողովուրդը պետք է ճանաչի և իմանա իր պատմությունն այնպես, ինչպես որ այն կա։ Պետք է ճանաչի և ըստ արժանվույն գնահատի պատմական յուրաքանչյուր իրողություն։

Երկրում ծավալված հեղափոխական վերափոխումների պրոցեսը, դեմոկրատացման խորացումն ու հրապարակայնության ընդլայնումը աննախադեպ թափ են հաղորդել հանրապետության աշխատավորների սոցիալ-քաղաքական ակտիվությանը, հաստատվում է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ։ Հասարակության բոլոր ուժերը համախմբվում են՝ հասունացած սոցիալ-տնտեսական, հոգևոր, ազգային, բնապահպանական և այլ խնդիրների լուծման համար։

---

դրության կենտրոնում: Համարձակորեն կարելի է ասել, որ արդյունաբերական, տրանսպորտային, շինարարական և մյուս բնագավառների զգալի թվով ձեռնարկությունների ղեկավարների, կուսկազմակերպությունների գործունեության մեջ առկա են դրական տեղաշարժեր. հաղթահարվել են հոգեբանական արգելքները, ավելի պարզորոշ են երևում վերակառուցման միտումները՝ աշխատավորության սոցիալ-կենցաղային պայմանների բարելավման անհրաժեշտությունը գնահատելու և այդ գործում վճռական քայլեր ձեռնարկելու ասպարեզում: Թեկուզև ձեռք բերված փոքր հաջողությունները մենք համարում ենք կուսակցական, քաղաքական-գաղափարախոսական նպա[illegible]վաց աշխատանքի արգասիքը:

Այդ առումով օրինակ կարող է ծառայել «Էրեբունի» նորաձևությունների հանրապետական տան կուսբյուրոյի (քարտուղար՝ Ս. Ասատրյան) և դիրեկցիայի (դիրեկտոր՝ Փ. Հայր[illegible]պետյան) կուտակած փորձը: Ձեռնարկությունում իրագործվում է մարդկային գոր[illegible] սոցիալական կայունության կոմպլեքսային ծրագիր: Վերջին տարիներին հետ[illegible]ական աշխատանք է կատարվել արտադրության ծավալները մեծացնելու, շահութաբերության աճն ապահովելու համար, լուծվել են բանվոր-ծառայողների սոցիալական մի շարք կարևոր հարցեր, ստեղծվել են աշխատանքի և հանգստի, բժշկական սպասարկման բոլոր անհրաժեշտ պայմանները: Կանաչապատված և բարեկարգված է ձեռնարկության ողջ տարածքը: Սևանի ավազանում կառուցվում է 300 տեղանոց պանսիոնատ: Նախատեսվում է կառուցել նաև կենցաղի տուն, 120 բնակարանանոց երկու շենք, որով հիմնովին կլուծվի բնակարանային պրոբլեմը ձեռնարկությունում: Հիմնական նորոգման է ենթարկվում մանկապարտեզը: Միավորման կոլեկտիվը զգալի օգնություն է ցույց տալիս ենթաշեֆ դպրոցին: Թվարկած գործոնների շնորհիվ զգալիորեն ամրապնդվել են ձեռնարկության կոլեկտիվի սոցիալական և բարոյական դիրքերը:

Նորություն ասած չեմ լինի. շատերը հիշում են, թե ինչպես ոչ հեռավոր անցյալում բոլոր մակարդակների տնտեսական ղեկավարների առաջին դեմքերը իրենց բարձունքից էին նայում գաղափարախոսական աշխատանքին և, որպես կանոն, դրանով զբաղվում էին «երկրորդական» մարդիկ: Գաղափարախոսական աշխատանքը գերազանցապես սկսվում էր այն պահից, երբ հարկ էր լինում դասախոսություն կարդալ կամ քաղաքական ուսուցման խմբակ ղեկավարել: Իսկ դրանից դուրս սկըսվում էր ավելի «կարևոր» աշխատանք: Ղեկավարը օրենքին հակասող գործողություններ էր կատարում, խախտում սոցիալական արդարությունը, միջոցներ չէր ձեռնարկում թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու, աշխատավորների սոցիալ-կենցաղային պայմանները բարելավելու համար և «գաղափարախոս» չէր համարվում: Այդպիսին նա համարվում էր միայն ամիսը մեկ-երկու անգամ անցկացվող քաղաքական ուսուցման պարապմունքների ժամանակ: Ահա թե ինչու աշխատավորները չէին հավատում զգալի թվով ամենատարբեր մասշտաբի ղեկավարների խոսքին, իսկ շրջկոմը պահանջվող գնահատականը չէր տալիս նրանց գործելակերպին:

Ներկայումս պահանջները լիովին փոխվել են: Էկոնոմիկայի բնագավառում ձեռք բերված յուրաքանչյուր հաջողություն կամ անհաջողություն գնահատվում է որպես գաղափարախոսական աշխատանքի արգասիք կամ հետևանք: Եթե թերացումներն ակնհայտ են արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի բնագավառներում, եթե հիմնարկ-ձեռնարկություններում դեռևս թույլ է կատարողական կարգապահությունը, վերջնական արդյունքի նկատմամբ սրտացավ շահագրգիռ վերաբերմունք չի դրսևորվում, արմատական բեկում չի նկատվում պայմանագրային պարտավորությունների կատարման գործում, ապա կուսակցական գաղափարախոսական աշխատանքի հաջողությունների մասին խոսելն ավելորդ է: Այդ առնչությամբ էլ վերակառուցման ներկա փուլում շրջկոմը ձգտում է պաշտպանել յուրաքանչյուր նորը, առանց որի անհնար է ապահովել առաջընթացը: Այդ ամենը կատարվում է խոր վերլուծությունների հիման վրա: Այսպես, վերլուծությունը ցույց է տալիս, որ շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակի մեջ տնտհաշվարկային բրիգադները կազմում են ընդամենը 25 տոկոսը, տնտեսագիտական ծառայություններում ընդգրկված կադրերի զգալի մասը չունի համապատասխան բարձրագույն կրթություն: Դրա պատճառով ձեռնարկություններից ոչ բոլորն էին պատրաստ՝ աշխատելու տնտեսավարման նոր պայմաններում: Ուստի, շրջանային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում ղեկավար և միջին օղակի կադրերի ոչ միայն քաղաքական, այլև տնտեսագիտական ուսուցմանը: Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի հետ շերտավորված ուսուցում ենք կազմակեր-



պում էկոնոմիկայի տարբեր ճյուղերի ղեկավար աշխատողների համար: Հատկապես կարևորում ենք տնտեսական ղեկավարների շրջանում տարվող աշխատանքը, որովհետև ձեռնարկություններն ու միավորումները լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման անցկացնելու համար պահանջվում է արմատապես վերակառուցել ղեկավարների գործունեության ձևերն ու մեթոդները, կատարելագործել ոճը: Անհրաժեշտ է, որ նրանք նախ և առաջ իրենք նախապատրաստվեն այդ պրոցեսին, ապա բարձրացնեն բոլոր ծառայությունների կադրերի պատասխանատվությունը, հոգ տանեն ձեռնարկության ֆինանսատնտեսական վիճակի կտրուկ բարելավման մասին: Շրջկոմը այդ տեսանկյունից է դիտում կադրերի շրջանում տարվող աշխատանքը: Հիրավի, մեր հասարակության վերակառուցումը առանց կադրերի ճիշտ ընտրության և տեղաբաշխման անհնար է իրականացնել:

Խոսելով կադրերի հետ տարվող աշխատանքի մասին, չպետք է աչքաթող անել մի կարևոր բնագավառ: Դա դպրոցն է, մանկավարժությունը: Չէ՞ որ ապագա քաղաքացին դպրոցում է ստանում իր հիմնական գիտելիքներն ու դաստիրակությունը, աշակերտն իր ուսուցիչների վարքագծով է չափում ավագներին, ընդօրինակում նըրանց: Հետևաբար, անչափ կարևորում ենք մանկավարժական կադրերի հետ տարվող աշխատանքը և այն մշտապես պահում մեր տեսադաշտում: Այսպես, շրջկոմի բյուրոն 1988 թ. հուլիսին որոշում ընդունեց շրջանի դպրոցներում և պրոֆտեխնիկական ուսումնարաններում «Վստահություն դիրեկտորին» օրակարգով ժողովներ անցկացնելու վերաբերյալ: Ի՞նչ նպատակ էր հետապնդում դա: Բանն այն է, որ դպրոցների և պրոֆտեխնիկական ուսումնարանների դիրեկտորների վերջին տարիների գործունեության ուսումնասիրությունը ցույց տվեց, որ, չնայած նրանք զգալի չափով վերանայել են այն, հաղթահարել պրակտիկայում արմատացած և այժմ մերժելի երևույթները, սակայն միշտ չի հաջողվում բացառել պետական, կատարողական կարգապահության, մանկավարժական էթիկայի խախտման դեպքերը, կրթօջախին անհարիր երևույթները: Երբեմն դպրոցների ղեկավարները հավասար օբյեկտիվությամբ չեն գնահատում ուսուցիչների աշխատանքը: Կան դեպքեր, երբ դիրեկտորին օգնելու, նրա հետ համագործակցելու փոխարեն առանձին ուսուցիչներ, ի չարը գործադրելով դեմոկրատիան, օգտագործելով առանձին վրիպումներ, դիրեկտորի համար ստեղծում են աշխատանքային անբարենպաստ պայմաններ, որոնք, ի վերջո, խոչընդոտում են ուսումնադաստիարակչական աշխատանքի նորմալ կազմակերպմանը: Եվ, ընդհակառակը, նկատվում է մանկավարժական կոլեկտիվների թույլ պահանջկոտություն դիրեկտորների նկատմամբ՝ նրանց գործունեության վերջնական արդյունքները գնահատելու հարցում: Քիչ չեն դեպքերը, երբ ուսումնադաստիարակչական աշխատանքի գծով դիրեկտորների տեղակալները, կազմակերպիչները, արհկոմները բավարար աջակցություն ցույց չեն տալիս դիրեկտորներին՝ նրանց ծառայողական պարտականությունների լիարժեք կատարման գործում: Ահա թե ինչու կուսշրջկոմը առանձնահատուկ կերպով կարևորում է դպրոցների ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու, նրանց գործունեությունը սկզբունքորեն գնահատելու, կոլեկտիվի և ղեկավարի փոխհամագործակցությունն ապահովելու հարցերը:

Հանրապետությունում առաջին անգամ 1987—88 ուսումնական տարվա սկզբին անցկացվեցին այդ ժողովները: Դրանք տեղի ունեցան գործարար մթնոլորտում, անկաշկանդ քննադատության և բացախոսության պայմաններում: Առաջին անգամ քննարկումն ընթացավ գերազանցապես դիրեկտորի անձի շուրջ, և առանձին դպրոցների ղեկավարներ դժվարին քննություն հանձնեցին: Այսպես, № 64 դպրոցի կոլեկտիվը վստահություն չհայտնեց իր դիրեկտորին և հետագայում ընտրվեց նորը:

Շրջանային կոմիտեն օբյեկտիվորեն խորամուխ է լինում կադրերի ճիշտ ընտրության, նրանց կազմակերպական, բարոյական և գաղափարական հատկանիշների մեջ, ավելի շատ է հենվում աշխատավորական կոլեկտիվների վրա և շատ բան է անում օրվան համընթաց, ժամանակի էությունն ու շունչը ընկալող, անձնական լավ օրինակ ծառայող ղեկավարներ առաջ քաշելու համար: Վերջին վեց ամիսներին մեր շրջանում, սկսած շրջկոմի առաջին քարտուղարից, բոլոր ղեկավարներն ընտըրվում են մրցակցությամբ՝ մեկից ավելի թեկնածուների առաջադրման պայմաններում: Այդ առնչությամբ գրեթե կրկնակի չափով կրճատել ենք անվանացանկի մեջ մտնող պաշտոնների քանակը: Դա հնարավորություն է ընձեռում յուրաքանչյուր ընտրվող կամ նշանակվող ղեկավար կադրին ճանաչել ինչպես հարկն է:

Վերակառուցման բարդ ու դժվարին խնդիրների լուծման ճանապարհին կուսշրջկոմը հենվում է սկզբնական կուսկազմակերպությունների վրա, որովհետև ինչպես ասվեց ԽՄԿԿ XXVII համագումարում, «եթե կուսակցական կազմակերպությունն ապրում է սկզբունքային հարաբերությունների վրա հիմնված լիարյուն կյանքով, եթե կոմունիստները զբաղված են կոնկրետ գործերով, այլ ոչ թե ընդհանուր թեմաների շուրջը խոսակցությունով, ապա հաջողությունն ապահովված է» (էջ 110): Ելնելով այս կարևոր եզրահանգումը՝ ձգտում ենք ապահովել ստորին օղակների մարտունակությունը, ԽՄԿԿ կանոնադրական պահանջների անթերի կատարումը, բարձրացնել կոմունիստների պատասխանատվությունը և ավանգարդային դերը արտադրության ոլորտում ու հասարակական կյանքում: Դրա վկայությունը Անդրերկաթուղու Երևանի հանգույցի կուսկոմիտեի (քարտուղար՝ Ա. Խաչատրյան) գործունեությունն է: Կուսկոմիտեն հսկողության տակ է վերցրել երկաթուղու աշխատանքը բնորոշող կարևորագույն ցուցանիշների կատարումը՝ տեխնիկական վերազինումը, սոցիալիստական սեփականության պահպանումը, կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը, բեռնումն ու բեռնաթափումը և այլն: Կուսկոմիտեն իր հեղինակությունն ու ազդեցությունն օգտագործում է ամենուրեք աշխատանքի առաջադիմական մեթոդները արմատավորելու համար: Պրակտիկ գործունեության մեջ աչքի են ընկնում նրանք, ովքեր, իրոք, սկսել են վերակառուցվել, գուցեև երբեմն ունենում են ինչ-որ բացթողումներ, վրիպումներ, բայց որոնում են, ցավում գործի համար, և նրանք, ովքեր միայն հարմարվում են՝ գործնականում ոչինչ չփոփոխելով:

Չնայած որ ձեռնարկած միջոցները դեռևս սպասվող արդյունքները չեն տվել, սակայն կատարվածը վկայում է, որ կուսկոմիտեն ճիշտ ուղու վրա է, տնտեսության կուսակցական ղեկավարումը տարվում է արդի պահանջների ոգով, որն անպայմանորեն կտա իր դրական արդյունքը:

Համամիութենական XIX կուսակցական կոնֆերանսի որոշումները գործողության ուղեցույց են շրջանի կուսկազմակերպության համար: Դրանք մեծապես նպաստում են ստորին օղակների ակտիվության բարձրացմանը, որը հատկապես նկատելի դարձավ հաշվետու-ընտրական կամպանիան նախապատրաստելու և անցկացնելու ընթացքում: Ժողովները նախապատրաստելիս կուսկազմակերպությունները լայնորեն օգտագործեցին այնպիսի ձևեր, ինչպիսիք են հաշվետու զեկուցումներին կոմունիստների նախնական ծանոթացումը, կուսակցական ընտրովի մարմինների կազմի վերաբերյալ հասարակական կարծիքի ուսումնասիրումը, այդ գործերին անկուսակցականների լայն ընդգրկումը: Ընտրովի մարմինների պրակտիկան հագեցվեց դեմոկրատական նոր բովանդակությամբ: Յուրաքանչյուր երկրորդ ժողովում ընտրությունները անցկացվեցին այլընտրանքի եղանակով: Վերջին տասնամյակներում առաջին անգամ ոչ բոլոր կոմունիստներն ընտրվեցին միաձայն, որը տարբեր կարծիքների առկայության լավագույն ցուցանիշ է:

ԽՄԿԿ XXVII համագումարը կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների պարտքը համարեց գաղափարադաստիարակչական և պրոպագանդիստական աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցները երկրի առջև ծառացած խնդիրների լուծման համար մասսաների մոբիլիզացմանը նպատակամղելը: Այդ գործում վճռական դեր է պատկանում նաև պրոպագանդիստական կադրերին: Եվ օրինաչափ է, որ կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները կուսակցական ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը կազմակերպելիս հիմք են ընդունում պատմական այն փորձը, որ առաջավոր գաղափարները կենսագործվում են, երբ մասսաները խորապես գիտակցում ու ըմբռնում են դրանց քաղաքական արդարացիությունը, ճշմարտացիությունը: Մենք պրոպագանդիստներին խորհուրդ ենք տալիս ունկնդիրների հետ խոսել միայն և միայն ճշմարտության լեզվով, թեկուզև խոսակցությունը դառն ստացվի: Միևնույն է, ճշմարտությունը տարբեր ճանապարհներով, հաճախ խեղաթյուրված, հասնում է ժողովրդին: Իսկ նման եղանակով հնարավոր չէ ապահովել կայուն համոզմունքներ ու հավատ: Անչափ բարդանում է այն պրոպագանդիստների գործը, ովքեր անմիջապես աշխատում են մասսաների մեջ: Օրինակ, ինչքան դժվարությունների հանդիպեցինք ղարաբաղյան իրադարձությունների կապակցությամբ: Այդ մասին շատ է խոսվել ու գրվել, մեղադրվել են սկզբնական և շրջանային կուսակցական օղակները: Իսկ որքա՜ն կհեշտանար նրանց գործը, կբարձրանար հեղինակությունը, եթե կենտրոնական և տեղական լրատվական միջոցները ճիշտ ժամանակին վստահեին ժողովրդին, նրա ազգային առողջ ինքնագիտակցությանը, ճշմարիտ տե-



ղեկություններ հաղորդեին կատարվող իրադարձությունների վերաբերյալ և, նրա հետ էլ խորհրդակցելով, ճիշտ վճիռներ ընդունեին:

Հաշվի առնելով գաղափարախոսական աշխատանքի դժվարություններն ու բարդությունը՝ մենք մշտապես հոգ ենք տանում պրոպագանդիստական կադրերի ոչ միայն ընտրության, այլև դաստիարակության մասին: Շրջանի պրոպագանդիստական կորպուսը պարբերաբար համալրում ենք քաղաքականապես հասուն, երևույթները փաստարկված վերլուծելու ընդունակ, ունկնդիրների հետ շփվելու ձևերին ու մեթոդներին տիրապետող մարդկանցով: Շրջկոմի քաղլուսկաբինետը մշակել է պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքի կարգ, նրանց պարբերաբար թարմ ինֆորմացիա է տրվում առանձին թեմաների, շրջանում սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման ընթացքի և հեռանկարային զարգացման հարցերի վերաբերյալ: Պրոպագանդիստներին օգնություն ցույց տալու կարևոր ձևերից է նրանց վարած պարապմունքներն ունկնդրելը: Յուրաքանչյուր ունկնդրումից հետո նրանց օգտակար խորհուրդներ են տալիս շրջանի լավագույն մասնագետները, և շրջկոմը միջոցներ է ձեռնարկում դրանք պրակտիկայում կիրառելու համար:

Շրջանային կոմիտեի ուսումնասիրությունները հանգեցրին այն համոզման, որ վերակառուցման ներկա փուլում աշխատավորական կոլեկտիվներում ստեղծվել է մի իրադրություն, որը մարդկանց մեջ ցանկություն է առաջացնում արտահայտվել սուր պրոբլեմների վերաբերյալ, համադրել զանազան տեսակետներ, գտնել ճշմարտությունը: Շրջկոմի անդամները, շրջանի ղեկավարները հատակորեն օգտագործում են բանավեճի ընձեռած հնարավորությունները, աշխատավորների հետ ունեցած հանդիպումների ժամանակ քննարկում են հրատապ հարցեր, լսում ուրիշների կարծիքը: Նման բանավեճեր են կազմակերպվում նաև շրջանի հանրակրթական դպրոցների բարձրդասարանցիների հետ: Բանավեճը հնարավորություն է ընձեռում բացահայտելու կարծիքների բազմազանությունը, զարգացնելու մարդկանց ստեղծագործական մտածողությունը և այլն: Գաղտնիք չէ, որ վերջին շրջանում մեզ մոտ տեղի ունեցող բանավեճերը արմատապես տարբերվում են նախորդներից: Մեզ ներկայումս ավելի շատ է հաջողվում համոզել, գտնել քննարկման առարկան, օգտագործելով երկխոսության մասնակիցների հարցերը, առաջարկները, դիտողությունները, ռեպլիկները՝ ծավալել կարծիքների աշխույժ փոխանակություն:

Կուսակցության շրջանային կազմակերպության վերջին կոնֆերանսից հետո կուսշրջկոմի, կուսկազմակերպությունների աշխատանքում նկատելի են նորովի գործելու դրական միտումներ: Ներկայումս ավելի շատ ժամանակ է հատկացվում անմիջականորեն կուսկազմակերպություններում իրականացվող աշխատանքին: Կրճատվել են այն միջոցառումները, որոնց անցկացումը կապված է կուսակցական-տնտեսական ակտիվին շրջկոմ հրավիրելու հետ: Նոր մոտեցումներ են մշակվել շրջկոմի և կուսկազմակերպությունների գործունեության մեջ ղեկավարման քաղաքական եղանակներ կիրառելու համար: Շրջկոմի առօրյա աշխատանքում, պլենումների և բյուրոների նիստերում զգալի առաջընթաց է նկատվում քննադատության և ինքնաքննադատության, հրապարակայնության զարգացման առումով: Ղեկավար կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով լայն տարածում է գտել նրանց հաշվետվությունների ու հաղորդումների քննարկումը սկզբնական կուսկազմակերպություններում և շրջկոմի բյուրոյի նիստերում:

Շրջկոմի գործունեության կարևորագույն ուղղություններից մեկը կադրերի ընտրության, դաստիարակության ու տեղաբաշխման գործի բարելավումն է, անհրաժեշտ ռեզերվի ստեղծումը: Ներկայումս բոլոր առաջին դեմքերը ընտրվում են կոլեկտիվների ժողովներում: Անհրաժեշտ փորձ ու հմտություն ունեցողների կողքին առաջ են քաշվում նաև երիտասարդներ: Վերջին մեկ տարում ընտրված ղեկավարների 50 տոկոսը մինչև 35 տարեկան են:

Բնական է, որ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեության ոլորտում հաջողությունը պայմանավորված է այն մարդկանցով, ովքեր շփվում են աշխատավորների հետ: Ուստի կուսշրջկոմը գաղափարախոսական ակտիվի ընտրությունը կատարում է ամենայն բծախնդրությամբ, այդ կարևոր գործին մասնակից դարձնում ղեկավար կադրերին:

Ճշմարտությունը պահանջում է ասել, որ ոչ հեռու անցյալում շրջանի ոչ բոլոր ղեկավար կադրերն էին հաճույքով ցանկություն հայտնում հանդիպելու աշխատավորական կոլեկտիվների հետ: Պատճառներից հիմնականը հիմնարկ-ձեռնարկություն-

ների ղեկավարների անտարբեր վերաբերմունքն էր կոլեկտիվի անդամների դաստիարակության նկատմամբ, իսկ երբեմն էլ՝ նրանց գաղափարատեսական պատրաստականության ցածր մակարդակը: Վիճակը շտկելու նպատակով շրջկոմն սկսեց մեծ ուշադրություն դարձնել միասնական քաղօրերի անցկացմանը: Այդ գործում մանրուքներ չկան: Ներկայումս ղեկավարները ամենայն պատասխանատվությամբ են նախապատրաստվում քաղօրվան, ճիշտ որոշում դրա անցկացման տեղն ու ժամը, ընտրում անհրաժեշտ նյութեր, խորանում գրականության մեջ: Այս ամենը օգնում է, որպեսզի դաստիարակչական աշխատանքի կենտրոնն ամենուրեք փոխադրվի աշխատավորական կոլեկտիվի ներքին օղակներ: Դա անհրաժեշտ է, որովհետև այստեղ է մղվում վերակառուցման կենսագործման պայքարը, ձևավորվում աշխատավորի դիմագիծը:

Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հոգում են դաստիարակության մի այնպիսի բացառիկ կարևոր ձևի հարստացման մասին, ինչպիսին է անհատական աշխատանքը: Դա կարևոր է հատկապես ներկա փուլում: Հարկավոր է ոչ թե առհասարակ պրոպագանդել, այլ նպատակային պրոպագանդել: Պետք է գնալ նրանց մոտ, ովքեր մեր կարիքն ունեն: Ներկայումս աշխատանք է տարվում յուրաքանչյուր կոլեկտիվում, ըստ բնակության վայրի: Ընդ որում, առաջնությունը տալիս ենք փոքրաթիվ կոլեկտիվներում տարվող քաղաքական-բացատրական աշխատանքին: Դա ավելի է ընկալելի դարձնում ասվածը, նպաստում փոխըմբռնողության ապահովմանը:

Սակայն, իմ կարծիքով, արդի փուլում կուսակցական-կազմակերպական-քաղաքական աշխատանքը, մյուս բնագավառների համեմատությամբ, վերակառուցման աստիճանով, մասշտաբներով դեռևս հետ է մնում: Լիովին արմատախիլ չի արվել գործունեության «կաբինետային» ոճը, կուսակցական աշխատանքը դեռևս ծածկված է «գաղտնիության» քողով: Արագորեն վերափոխման կարիք ունի ընտրովի մարմինների, մասնավորապես շրջկոմների, նրանց բյուրոների աշխատանքի ոճը, նրանք դեռևս գործում են ապարատների թելադրանքով:

Կուսշրջկոմը, հաշվի առնելով հիշատակված թերություններն ու թերացումները, միջոցներ է ձեռնարկում դրանք վերացնելու և շտկելու համար: Մասնավորապես շըրջկոմի անդամների ակտիվությունը բարձրացնելու նպատակով նախատեսվում է հիմնարկ-ձեռնարկություններում սահմանել նրանց կողմից աշխատավորների ընդունելության օրեր և այնտեղ բարձրացված հարցերին տեղյակ պահել շրջանային կոմիտեին: Շրջկոմի պլենումների ժամանակ այսուհետև նախօրոք չեն կազմվի ելույթ ունեցողների ցուցակներ: Բոլորին հնարավորություն կտրվի կարծիք հայտնելու քննարկվող հարցի վերաբերյալ:

Մենք վստահ ենք, որ ներկա ժամանակում կրկնապատկվում, եռապատկվում են շրջանային կոմիտեների, բոլոր կոմունիստների դերն ու պատասխանատվությունը: Մեր հետագա քաղաքականության հեղինակությունն ու ներգործունությունը այսօր վճռականորեն պայմանավորված են նաև այն բանով, թե կոմունիստները որքան ակտիվորեն և պատասխանատվությամբ կգործեն իրենց վստահված տեղամասերում, ինչպիսի հաստատակամությամբ կապահովվի բարձր պահանջկոտություն, թերությունների նկատմամբ կստեղծվի անհանդուրժողականության մթնոլորտ, թե ինչպիսին կլինի մեր ռեալ ազդեցությունն այնպիսի կենսահույզ հարցերի լուծման վրա, որոնք նպաստում են կոմունիստների, աշխատավորների տրամադրության լավացմանը, ակտիվության աճին ու նախաձեռնության զարգացմանը: Շրջանի կուսկազմակերպությունը, նրա կոմիտեն ձգտում են գործել կուսակցության արդի պահանջներին համընթաց, իրենց նպաստը բերել վերակառուցման հաղթանակին:

---

# ԱՆՁՆԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՏԵԳՈՐԻԱ Է

**Վ. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ**

ԱՅՍՕՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ առանձնահատուկ ուշադրություն է նվիրում անձնական օժանդակ տնտեսություն վարելու նպատակով կոլտնտեսականներին և բանվոր ծառայողներին, ինչպես նաև այգեգործական ու բանջարաբուծական ընկերություններում ընդգրկված քաղաքացիներին հատկացված հողամասերի ռացիոնալ օգտագործման և պետության ու կոլտնտեսությունների կողմից նրանց ցույց տրվող աջակցությունն ուժեղացնելու հարցերին: Այդ խնդիրները ամենայն լրջությամբ դրվեցին ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումում և ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում:

Անձնական օժանդակ տնտեսության գոյությունը մեր երկրում օբյեկտիվ անհրաժեշտություն է: Այն պայմանավորված է բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքով բավարարելու խնդրով: Հանրային տնտեսությունը և՛ իր մասշտաբներով, և՛ տեսականիով, հաճախ նաև որակով, ի վիճակի չէ լիովին բավարարելու հասարակության պահանջմունքները: Դա հատկապես վերաբերում է բոլոր տեսակի մրգերին և բանջարաբոստանային կուլտուրաներին: Թեև ամբողջ արտադրությունը հիմնականում սեզոնային է, բնակչությունը սպառում է ամբողջ տարվա ընթացքում: Ջերմոցային տնտեսությունները որոշ չափով մեղմացնում են սեզոնայնությունը, մինչդեռ դրանք էլ ամբողջ տարվա ընթացքում բնակչության պահանջները գյուղատնտեսական մթերքի շատ տեսակներով բավարարել չեն կարող: Հանրային տնտեսությունում արտադրված այդ մթերքի վաճառքը միջսեզոնային ժամանակաշրջանում զգալիորեն զիջում է անձնական օժանդակ տնտեսություններում մթերքի արտադրության և վաճառքի չափերին:

Երկար ժամանակ գյուղատնտեսական մթերքի շատ տեսակների գծով բնակչության պահանջարկը մեծ մասամբ լուծում են կոլտնտեսային շուկաները:

Անձնական օժանդակ տնտեսությունը սոցիալիզմին հատուկ օբյեկտիվ տնտեսական կատեգորիա է: Այն արտահայտում է որոշակի տնտեսական հարաբերություններ, որոնք դրսևորվում են երկու ձևով: Նախ՝ հանդես է գալիս որպես օժանդակ տնտեսությունը վարելու օբյեկտ, հողի սեփականատիրոջ՝ պետության և այդ տնտեսությունը վարող կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների միջև դրսևորվող հարաբերությունների ձևով: Թեև հողը պատկանում է պետությանը, բայց դրա վրա արտադրված մթերքը գրեթե ամբողջությամբ տնօրինում են օժանդակ տնտեսություն վարողները: Նման հարաբերությունները հատուկ են միայն սոցիալիզմին: Այդ հարաբերությունների դրսևորման մյուս ձևը կրում է ապրանքային բնույթ: Այն կոնկրետ արտահայտվում է օժանդակ տնտեսությունը վարողների և նրանց արտադրանքը գնողների միջև: Այստեղ ստացված գյուղատնտեսական մթերքը վաճառվում է ինչպես պետությանը, այնպես էլ հասարակության այն անդամներին, որոնք դրա կարիքը զգում են, իսկ մի մասն էլ սպառում են իրենք՝ արտադրողները:

1987 թ. երկրում անձնական օժանդակ տնտեսությամբ էր զբաղվում 43 մլն, կոլեկտիվ այգեգործությամբ՝ 8 մլն 285,3 հազար, կոլեկտիվ բանջարաբուծությամբ՝

---

*ԽՈՋԱԲԵԿՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ԵՂԻՇԵԻ— ՀԽՍՀ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտի դիրեկտորի տեղակալ, Հանրապետության ԳԱ թղթակից-անդամ:*

5 մլն 859,2 հազար ընտանիք: Ներկայումս անձնական օժանդակ տնտեսությունները կազմում են երկրի ընդհանուր ցանքատարածությունների 2,7 տոկոսը: Անձնական օժանդակ տնտեսություններում է արտադրվում գյուղատնտեսության համախառն արտադրանքի 1/4-ը: Դա բացատրվում է ոչ միայն անձնական օժանդակ տնտեսություններում աշխատանքի ավելի արդյունավետ ու նպատակային ծախսմամբ, այլև մշակվող կուլտուրաների բարձր աշխատատարությամբ ու ապրանքայնությամբ: Այդ տնտեսությունները տալիս են երկրում արտադրվող կարտոֆիլի 58, բանջարեղենի՝ 29, պտղի և հատապտղի 54 տոկոսը: Անձնական օժանդակ տնտեսությունների զբաղեցրած 5,71 մլն հեկտար ընդհանուր ցանքատարածություններից ավելի քան 69,2 տոկոսը (3,95 մլն հեկտար) կարտոֆիլի և բանջարաբոստանային կուլտուրաների, մոտ 22 տոկոսը՝ պտղի և հատապտղի ցանքատարածություններ ու խաղողի այգիներ են: Երկրում կոլեկտիվ այգեգործության և բանջարաբուծության համար հատկացված ցանքատարածությունները կազմում են ընդհանուրի 0,4 տոկոսը: Ելնելով վերոհիշյալից, հաճախ, առանց բոլոր փաստերը վկայակոչելու, եզրակացություն է արվում, թե ընդհանուր ցանքատարածությունների այդ չնչին մասը զբաղեցնող անձնական օժանդակ տնտեսություններում արտադրվում է գյուղատնտեսական ընդհանուր մթերքի մեկ քառորդը: Տվյալ եզրակացությամբ անտեսվում է այն, որ գյուղատնտեսության մասն է կազմում նաև անասնաբուծությունը: Ըստ որում, անձնական օժանդակ տնտեսություններում պահվող անասունների տեսակարար կշիռը բավականին բարձր է: Այստեղ պահվող անասունները արոտի շրջանում արածում են հանրային արոտավայրերում, իսկ մսուրային շրջանում՝ կերակրվում հանրային արոտավայրերից հնձված անասնակերով: Բավական է ասել, որ կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների անձնական օժանդակ տնտեսություններում է պահվում (1988 թ. հունվար) խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի 19,4, այդ թվում կովերի՝ 30,1, խոզերի՝ 17,6, ոչխարների և այծերի 22,6 տոկոսը: Անձնական օժանդակ տնտեսությունները ապահովում են երկրում արտադրվող մսի (սպանդանոցային քաշով) 26, կաթի՝ 20,8, ձվի՝ մոտ 26,0, բրդի 22,1 տոկոսը:

Մեր հանրապետությունում անձնական օժանդակ տնտեսություններին հատկացված է ընդհանուր ցանքատարածությունների 5,92 տոկոսը, որը, սակայն, մեկ ընտանիքի հաշվով զգալիորեն զիջում է միութենական միջին մակարդակին: Ըստ որում, մեզ մոտ ցածր են ոչ միայն մեկ ընտանիքին հատկացվող հողակտորների նախատեսվող նորմաները, այլև դրանք իրենց չափերով չեն համապատասխանում նույնիսկ այդ ցածր նորմաներին, այսինքն փաստորեն ավելի փոքր են: Հանրապետությունում անձնական օժանդակ տնտեսություններին հատկացված հողատարածությունների 64,7 տոկոսը զբաղեցնում են կարտոֆիլի և բանջարա-բոստանային, 22,7-ը՝ կերային, 12,2-ը՝ հատիկային կուլտուրաները: Բանջարաբոստանային կուլտուրաների զբաղեցրած ընդհանուր ցանքատարածությունների ավելի քան 40, պտղի ու հատապտղի 32 տոկոսը բաժին է ընկնում անձնական օժանդակ տնտեսություններին: 1988 թ. հունվարի դրությամբ այս տնտեսություններին բաժին էր ընկնում խոշոր եղջերավոր անասունների 32,1, այդ թվում կովերի՝ մոտ 43,8, խոզերի՝ 29,4, ոչխարների և այծերի 37,8 տոկոսը:

1987 թ. անձնական օժանդակ տնտեսությունները տվել են հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքի մեկ երրորդը (բուսաբուծական մթերքի մոտ 32, անասնաբուծականի՝ 37 տոկոսը): Դրանց բաժին է ընկնում հանրապետությունում արտադրվող կարտոֆիլի 50, բանջարեղենի՝ 46,9, խաղողի՝ 18,5 պտղի՝ 62, մսի (սպանդանոցային քաշով)՝ 33,8, կաթի՝ 31, ձվի՝ 28,6, բրդի 35,6 տոկոսը:

Այսպիսով, հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքի մեջ զգալի տեսակարար կշիռ ունեն այնպիսի արտադրատեսակները, ինչպիսիք են կարտոֆիլը, խաղողը, մրգերն ու բանջարեղենը, ինչպես նաև անասնապահական մթերքը: Լինելով չափազանց աշխատատար, դրանք միաժամանակ ունեն բարձր ապրանքայնություն, ինչը, բնականաբար, խթանում է այդ մթերքի արտադրությունն անձնական օժանդակ տնտեսություններում: Հավասար հողատարածությունների վրա նշված կուլտուրաներից անձնական օժանդակ տնտեսություններում ստացվում է ավելի բարձր բերք, քան հանրայինում: Դրա հիմքում ընկած է կենդանի աշխատանքի ծախսման լարվածությունը: Մինչդեռ այն կուլտուրաները, որոնց մշակումը գրեթե ամբողջովին մեքենայացված է (օրինակ, հատիկային) հավասար հողատարածու-



թյուններից հանրային տնտեսություններում ավելի բարձր բերք են տալիս: Դա է պատճառը, որ անձնական օժանդակ տնտեսությունների ցանքատարածությունների միայն 14,6 տոկոսն է հատկացված հացահատիկի մշակմանը, որտեղ ստացվում է հացահատիկի համախառն արտադրանքի հազիվ մեկ տոկոսը:

Անձնական օժանդակ տնտեսությունը կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների եկամուտների կազմավորման կարևոր աղբյուր է: Մեր հանրապետությունում 1987 թ. տվյալներով կոլտնտեսականների ընտանիքների համախառն եկամտի մեջ անձնական օժանդակ տնտեսությունների բաժինը կազմել է 23,8, իսկ ընդհանուր աշխատանքային ծախսումների մեջ՝ 19,7 տոկոս: Սակայն, դրա հետ մեկտեղ, պետք է նշել, որ կոլտնտեսականների եկամուտների մեջ անձնական օժանդակ տնտեսություններից ստացվածի բաժինը ունի կրճատման, իսկ այլ աղբյուրներից ստացվածի բաժինը՝ աճի միտում: Այսպես, կոլտնտեսականների ընտանիքների համախառն եկամտի մեջ անձնական օժանդակ տնտեսություններից ստացված եկամտի բաժինը 1970 թ. 29 տոկոսից իջել և, ինչպես նկատեցինք, 1987 թ. կազմել է 23,8 տոկոս: Դա բացատրվում է թոշակի, հասարակական ֆոնդերից կատարվող վճարումների և եկամտի այլ աղբյուրներից գոյացող եկամուտների տեսակարար կշռի բարձրացումով: Ինչ վերաբերում է կոլտնտեսություններում աշխատանքի դիմաց տրվող վարձատրությանը, ապա ընտանիքի եկամտի մեջ դրա տեսակարար կշիռը շատ չնչին չափերով իջնելու միտում է դրսևորում: Միաժամանակ, աշխատանքային ընդհանուր ծախսումների մեջ նվազում է կոլտնտեսային արտադրությունում կատարված աշխատանքի բաժինը, իսկ անձնական օժանդակ տնտեսություններինը, երկար ժամանակ մնալով անփոփոխ, վերջին տարիներին որոշ չափով ավելանում է, քանի որ անձնական օժանդակ տնտեսություններում աշխատանքը մեծ մասամբ կատարվում է ձեռքով: Անձնական օժանդակ տնտեսություններում աշխատանքային ծախսումների համեմատությամբ ընտանիքի եկամուտների ավելի բարձր տոկոսը բացատրվում է նրանով, որ կոլտնտեսականի աշխատաժամանակը, հետևապես և արտադրված արդյունքը հանրային տնտեսություններում բաժանվում է երկու մասի՝ անհրաժեշտի և հավելյալի: Մինչդեռ կոլտնտեսականների (ինչպես նաև բանվորների ու ծառայողների) աշխատանքային ծախսումները անձնական օժանդակ տնտեսություններում գրեթե ամբողջովին հանդես են գալիս որպես անհրաժեշտ աշխատաժամանակ, իսկ արտադրված արդյունքը՝ անհրաժեշտ արդյունք: Դա անձնական օժանդակ տնտեսություններում բարձր եկամտաբերություն ապահովող աշխատատար կուլտուրաների արտադրությունը զարգացնելու մեծ ազդակ է:

Անձնական օժանդակ տնտեսության նկատմամբ նման մոտեցումը ճիշտ կլինի շարունակել: Հողը վարձակալության տալու սկզբունքները և դրա հետ կապված հողասեփականատիրոջ ու հողը վարձակալողի միջև սահմանվող հարաբերությունները, հարկային քաղաքականության և ռենտավճարումների սկզբունքները անձնական օժանդակ տնտեսությունների վրա տարածելու հարկ չկա: Անձնական օժանդակ տնտեսություններում արտադրվող արդյունքները միշտ էլ պետք է հանդես գան որպես անհրաժեշտ, ամբողջությամբ պատկանեն արտադրողներին: Մինչդեռ հողի վարձակալության պայմաններում հողասեփականատիրոջ և վարձակալի (կոլտնտեսություն, կոոպերատիվ, առանձին անհատներ) միջև պայմանագրով նախատեսվող համարժեքային ապրանքափոխանակության հետ մեկտեղ վարձակալները հարկատու են պետությանը հողօգտագործման համար: Եկամտահարկից բացի նրանք պետք է կատարեն համապատասխան ռենտավճարումներ, որը նպատակահարմար չէ տարածել անձնական օժանդակ տնտեսությունների վրա:

Մեր հանրապետությունում օժանդակ տնտեսություններից կոլտնտեսականների և բանվոր-ծառայողների ստացած համախառն եկամտի մեջ չափազանց բարձր է բանջարեղենի, բոստանային կուլտուրաների, պտղի արտադրությունից և անասնապահությունից ստացվող եկամտի բաժինը: Օրինակ, օժանդակ տնտեսություններից կոլտնտեսականների ընտանիքների ստացած եկամուտների մեջ կարտոֆիլի բաժինը կազմում է 13, բանջարեղենինը և բոստանային կուլտուրաներինը՝ 23,5, մրգինը և հատապտղինը՝ 28,4, անասնապահական մթերքինը՝ 31,7 տոկոս: Բանվոր-ծառայողների ընտանիքներում դրանք համապատասխանաբար կազմել են 7,9 և 29,9 տոկոս, 18,2 և 38,7 տոկոս: Դրա հետ մեկտեղ, վերջին տարիներին ավելանում են անձնական օժանդակ տնտեսություններում արտադրված մթերքի պետական գնումները: Օրինակ, 1971—1987 թթ. անասունի և թռչնի մսի (կենդանի քաշով) պետա-

կան զնումներն ավելացել են 4,2, բրդինը՝ 2,8 անգամ, անձնական օժանդակ տընտեսություններում դրանց արտադրությունը համապատասխանաբար 1,7 և մոտ 1,3 անգամ ավելանալու պայմաններում: Այդ տնտեսությունների բաժինը անասունի և թռչնի մսի (կենդանի քաշով) 1987 թ. գնումների մեջ կազմում էր 23,4, բրդի (մաքուր թելի վերածած) գնումների մեջ՝ 29,1 տոկոս:

Ինչպես նկատում ենք, անասնապահությունից (այդ թվում գիրացումից և հավելանից) ստացված եկամտի բաժինը բանվոր-ծառայողների ընտանիքների եկամուտների մեջ ավելի մեծ է, քան կոլտնտեսականների ընտանիքներում: Ուշագրավ է, որ վերջին տարիների ընթացքում կոլտնտեսականի ընտանիքի եկամտի մեջ այդ աղբյուրից ստացվածը դրսևորում է նվազելու, իսկ բանվոր-ծառայողների մոտ՝ աճի միտում: Դա բացատրվում է անասունների համար խոտացրած կեր ձեռք բերելու և արոտավայրերից օգտվելու կոլտնտեսականների նվազ հնարավորություններով: Այդ հարցը պետք է լրջորեն մտահոգի կոլտնտեսությունների վարչություններին: Վերոհիշյալ և մի շարք այլ պատճառներով, շատ ընտանիքներ ապրելով գյուղում, չեն զբաղվում օժանդակ տնտեսությամբ, հող չեն մշակում, անասուն չեն պահում: Նրանք գյուղատնտեսական մթերք արտադրողից դարձել են դրանք սպառողներ:

Այժմ անդրադառնանք այն հարցին, թե անձնական օժանդակ տնտեսությունն ինչ չափով է նպաստում հանրային տնտեսության զարգացմանը: Աշխատողների նյութական շահագրգռվածության տեսանկյունից անձնական օժանդակ տնտեսությունը լրացուցիչ եկամտի աղբյուր է: Նախ՝ դրանից կոլտնտեսականների և բանվոր-ծառայողների ստացած լրացուցիչ եկամուտը հիմնականում ծախսվում է արդյունաբերական ապրանքներ և անհատական բնակարանի շինանյութ ձեռք բերելու համար: Երկրորդ, այդ լրացուցիչ եկամուտը պայմանավորում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը նաև հանրային արտադրությունում, քանի որ դրան մասնակցող ընտանիքի անդամները նյութապես շահագրգռված են առավել արդյունավետ օգտագործելու իրենց աշխատաժամանակը: Ներկայումս այն նպաստում է նաև բանվոր-ծառայողների աշխատաժամանակի արդյունավետ օգտագործմանը:

Կոլտնտեսականների ընտանիքների բյուջեների բազմամյա ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ անձնական օժանդակ տնտեսություններում հիմնականում կիրառվում է կոլտնտեսային, պետական ու կոոպերատիվ հանրային արտադրության մեջ համապատասխան արդյունավետություն չապահովող աշխատուժ: Դրանք գլխավորապես թոշակառու տղամարդիկ են, աշխատունակ կանանց մի մասը (հիմնականում անչափահաս երեխաներ ունեցողները) և մասամբ անչափահասները: Բավական է ասել, որ մեր հանրապետությունում կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսություններում ընտանիքի հաշվով ծախսված աշխատաժամանակում աշխատունակ տղամարդկանց բաժինը կազմում է 12, իսկ կանանցը՝ 24,1 տոկոսը: Մնացածը բաժին է ընկնում աշխատանքային տարիքից դուրս գտնվող բնակչությանը:

Անձնական օժանդակ տնտեսությունը մեր երկրում տնտեսության կազմակերպման անհրաժեշտ ձև է: Ուստի սխալ է տնտեսական կյանքում դրա դերի նսեմացումը: Այն գնահատելիս չպետք է ելնել միայն տնտեսությունը վարող առանձին անձանց շահերից: Նման մոտեցումը չի արտահայտի անձնական օժանդակ տնտեսության դերն ու նշանակությունը բնակչության պահանջմունքների բավարարման գործում: Չէ որ իրենք՝ կոլտնտեսականները և բանվոր ծառայողները, անձնական օժանդակ տնտեսություններում ստեղծված մթերքի միայն մի մասն են սպառում, դրա զգալի մասը դուրս է բերվում շուկա:

Հետևաբար, անձնական օժանդակ տնտեսությունները մթերքի որոշ տեսակների նկատմամբ բնակչության պահանջմունքները բավարարելու կարևոր աղբյուր են: Եվ պատահական չէ, որ ԽՄԿԿ XXVII համագումարը կոլեկտիվ և խորհրդային տնտեսությունների ղեկավարներին պարտավորեցրեց գյուղի բնակիչներին անհրաժեշտ օգնություն ցույց տալ տնամերձ տնտեսությունները վարելու, այգեգործական և բանջարաբուծական ընկերությունների կազմակերպման գործում: Մ. Ս. Գորբաչովը, անդրադառնալով այդ հարցին, նշել է, որ «ժամանակն է դադարել վկայակոչելու հողերի պակասությունը: Դա չի համապատասխանում իրականությանը, հող կա: Դե, իսկ այնտեղ, որտեղ ազատ հողերը իրոք քիչ են, հարկավոր է դիմել կոլեկտիվ ու պետական տնտեսություններին, ձեռնարկություններին պատկանող հողերի մի մասի հատկացման: Եկեք վերջնականապես պայմանավորվենք. հարկավոր է լրիվին բավարարել աշխատավորների բոլոր պահանջմունքները, այս գործում վերացնել անհիմն սահմանափակումներն ու խոչընդոտները» (ԽՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերը, էջ 30):



Ձևայած մեր հանրապետությունում, ինչպես հայտնի է, տարեցտարի ընդլայնվում են խաղողին, բանջարեղենին, կարտոֆիլին և պտղին հատկացվող հողատարածությունները, բայց այդ մթերքով բնակչության աճող պահանջմունքները դեռևս լրիվ չափով չեն բավարարվում: Հետևապես դա կարելի է իրականացնել ինչպես ի հաշիվ հանրային արտադրության ավելացման, այնպես էլ անձնական օժանդակ տնտեսության: Վերջին 15—20 տարիների փորձը վկայում է, որ հանրապետությունում խնձորի ու տանձի բազմաթիվ արժեքավոր տեսակներ, ավանդական շրջաններից բացի, բարձր բերք են տալիս ծովի մակերևույթից մոտ 2 000 մ բարձրության վրա գտնվող Սևանի ավազանում, Արագածի հովտում, Շիրակի դաշտում, Փամբակի նախալեռնային շրջաններում: Այսօր մրգի ու հատապտղի մշակությունն ընդլայնվում է հիմնականում հիշյալ շրջանների անձնական օժանդակ տնտեսություններում: Հայկական ԽՍՀ-ում դրանց հատկացված ընդհանուր հողատարածությունները 1960—1987 թթ. ավելացան 28,4 հազար հեկտարով, որից 10,4 հազարը կամ շուրջ 40 տոկոսը բաժին է ընկնում անձնական օժանդակ տնտեսություններին: Դրա շնորհիվ անձնական օժանդակ տնտեսությունից կոլտնտեսականների ընտանիքների ստացած եկամտի մեջ պտղի և հատապտղի բաժինը 1980 թ. 25 տոկոսից բարձրացավ և 1987 թ. կազմեց 33,9 տոկոս: Մինչդեռ անասնապահական մթերքի բաժինը այդ ընթացքում 40,2 տոկոսից իջավ և կազմեց 30,8 տոկոս: Բանվոր-ծառայողների ընտանիքներում վերջինս 25,2-ից բարձրացավ և կազմեց 38,7 տոկոս: Այնինչ մրգի և հատապտղի բաժինը 21,3-ից իջավ 18,2 տոկոսի:

Հեռանկարում, որոշակի ժամանակահատվածում ենթադրվում է անձնական օժանդակ տնտեսությունների ընդհանուր չափերի ավելացում: Այդ տնտեսությունների զարգացման պրոցեսում դրսևորվող միտումները կհանգեցնեն նրան, որ դրանցում զբաղվածների թիվը հավանաբար փոքր-ինչ կավելանա, կընդլայնվեն նաև օժանդակ տնտեսությունում փոքր մեքենայացման միջոցներն օգտագործելու հնարավորությունները: Դա բացատրվում է նրանով, որ այսուհետև ավելի սերտորեն կզուգակցվի աշխատանքային տարիքի բնակչության զբաղվածությունը հանրային և անձնական օժանդակ տնտեսություններում: Վերջիններում կավելանա նաև աշխատունակ բնակչության այն մասը, որը փոքր տարիքի երեխաներ խնամելու պատճառով ի վիճակի չէ մասնակցելու հանրային տնտեսության աշխատանքներին: Իսկ դա տնային տնտեսություններում օբյեկտիվ պատճառներով ընդգրկված աշխատուժն արդյունավետ օգտագործելու լավագույն ձև է: Դրա հետ մեկտեղ, օժանդակ տնտեսություններում կավելանա անչափահասների զբաղվածությունը: Ուրբանիզացիայի արդի պայմաններում դա կլինի հասուն տարիք մուտք գործող սերնդի աշխատանքային դաստիարակության չափազանց կարևոր գործոն: Մանավանդ որ գիտատեխնիկական առաջընթացի և դպրոցական ռեֆորմի իրագործման կապակցությամբ, երիտասարդության մի մասը հանրային տնտեսությունում աշխատանքի կանցնի ոչ թե 16, այլ համեմատաբար ավելի ուշ տարիքում: Մինչդեռ 14—18 տարեկան երիտասարդը զբաղվելով ուսմամբ, իր ֆիզիկական ունակությունները գործադրելու ասպարեզ գրեթե չունի: Այդ իսկ տեսակետից ֆիզիկական կուլտուրայի զարգացման հետ մեկտեղ, կարևոր նշանակություն են ստանում անձնական օժանդակ տնտեսությունները, այգեգործական և բանջարաբուծական ընկերությունները: Այստեղ է, որ պատանին ու աղջիկը կարող են բարիք ստեղծել, ապրել իրենց աճեցրած այգուց պտուղ քաղելու գեղեցիկ զգացումն ու բերկրանքը:

Այսպիսով, անձնական օժանդակ տնտեսության, բանջարաբուծական և այգեգործական ընկերությունների գոյության օբյեկտիվ անհրաժեշտությունը պայմանավորված է ոչ միայն պարենային ծրագրի լուծմանը՝ դրանց մասնակցության կարևորությամբ, այլև նրանով, որ փոքր երեխաներ խնամող տնային տնտեսուհիներն իրենց աշխատանքը զուգակցում են անձնական օժանդակ տնտեսությունը վարելու հետ: Երկրորդ, այստեղ կիրառվում է թոշակառուների աշխատուժը, որը խոշոր սոցիալական պրոբլեմի՝ ծերության պրոբլեմի լուծման ուղիներից մեկն է: Երրորդ, այն փոքր դեր չի խաղում մտավոր և ֆիզիկական աշխատանքներն ավելի նպատակամետ զուգակցելու հարցում: Չորրորդ, այն աճող սերնդի աշխատանքային դաստիարակության կարևոր գործոն է: Հինգերորդ, անձնական օժանդակ տնտեսությունը

հնարավորություն է տալիս արդյունավետորեն օգտագործել աշխատավորության ազատ ժամանակը:

Ժամանակի ընթացքում աշխատունակ բնակչության համար անձնական օժանդակ տնտեսությունում զբաղվածությունը կկրի իրոք օժանդակ բնույթ: Դրանցում զբաղվածների մի մասն այն կզուգակցի հանրային արտադրության հետ: Այդ իմաստով պետք է տարբերություն դնել անձնական օժանդակ տնտեսություններում զբաղվածների թվի և այնտեղ ծախսվող աշխատաժամանակի փոնդի միջև: Չի կարելի անտեսել, որ այժմ էլ անձնական օժանդակ տնտեսություններում զբաղվածների հիմնական մասը գյուղատնտեսական աշխատանքների լարված շրջանում օգնում է հանրային տնտեսությանը: Ըստ որում, գյուղատնտեսական աշխատողների միջին տարեկան թիվը որոշելիս նրանք դիտվում են միայն հանրային տնտեսության մեջ զբաղվածներ, թեև ժամանակի մեծ մասը տրամադրում են անձնական օժանդակ և տնային տնտեսությանը: Վիճակագրական պրակտիկայում հաստատված նման սխալ մոտեցումը ոչնչով արդարացնել չի կարելի: Դրանով իսկ քողարկվում է աշխատուժի օգտագործման անարդյունավետությունը: Ինչպես արդեն նշեցինք, մեր հանրապետությունում ցածր են մեկ ընտանիքի հաշվով հողակտորների նախատեսվող նորմաները և հատկացված հողակտորները, շատ ընտանիքների պահանջը հողակտորներով չի բավարարվում: Բայց մի՞թե չկան ազատ և չմշակվող հողեր: Փաստ է նաև, որ Հայաստանում լեռնային շատ գյուղեր դատարկվում են, կան գյուղեր, որոնք լրիվ ամայացել են և դրանցում այլևս ոչ ոք չի ապրում: Շատ գյուղերում բազում տների դռները փակ են: Դրանք հատկապես ալպյան հարուստ արոտավայրերով գյուղեր են, ուր հոգատար վերաբերմունքի դեպքում կարելի է զարգացնել անասնապահությունը, այդ թվում անձնական օժանդակ տնտեսություններում: Բավական է ասել, որ 1959 թ. հանրապետությունում կար 1192 գյուղ, մինչդեռ 1987 թ. դրանց թիվը իջավ 914-ի: Ճիշտ է, դրանցից շուրջ երեք տասնյակը վերանվանվել են քաղաքների կամ ավանների, շատ քիչ գյուղեր միացվել կամ մտել են մեծացող քաղաքների շրջագծի մեջ, բայց հիմնական մասը վերացվել է: Դրանք մեծ մասամբ փոքր գյուղեր են: Եթե 1959 թ. հանրապետությունում հաշվվում էր մինչև 100 բնակիչ ունեցող 240 գյուղ, ապա 20 տարի անց այդ թիվը իջավ 15-ի, 124 գյուղ վերացել է, 54-ին սպասվում է նույն ճակատագիրը: Ընդհանուր առմամբ 1939—1987 թթ. հանրապետությունում վերացել է 186 գյուղական բնակավայր:

ԽՍՍՀ գյուղատնտեսական արտելի կանոնադրության համաձայն, անձնական օժանդակ տնտեսություն վարելու նպատակով նախատեսվում է յուրաքանչյուր ընտանիքին հատկացնել 0,2 հեկտար ջրովի կամ 0,5 հեկտար անջրդի հողատարածություն: Լեռնային շրջաններում անձնական օժանդակ տնտեսություն վարելու համար մեկ ընտանիքին միջին հաշվով հատկացված հողակտորները կազմում են 0,19, իսկ առանձին տեղերում՝ նույնիսկ 0,08—0,10 հեկտար: Արարատյան դաշտում դրանց չափերը հասնում են 0,16 հեկտարի: Հետևապես Արարատյան դաշտում փաստացի հատկացված հողատարածությունները կազմում են նախատեսվող նորմայի 80, իսկ լեռնային շրջաններում՝ 40 տոկոսը:

Լեռնային շրջաններում ընտանիքները համեմատաբար մեծ են, շատ ընտանիքներ բաղկացած են երկու, երեք ամուսնական զույգերից: Այդ ընտանիքները երկար ժամանակ տնտեսությունը վարում են միասին, ուշ են բաժանվում՝ առանձին ինքնուրույն միավոր կազմելու համար: Մեծ ընտանիքներին հատկացվում են նույն չափի հողակտորներ, ինչքան 2—3 հոգուց բաղկացած ընտանիքներին:

Հանրապետությունում, հատկապես ծայրամասային լեռնային շրջաններում սոցիալ-տնտեսական լայն ծրագիր իրականացնելու և երիտասարդության արտահոսքը նվազեցնելու նպատակով, օրակարգի հարց է անձնական օժանդակ տնտեսություն վարելու համար հողամասերով բավարարելու խնդիրը: Այն դեպքում (ինչպես, օրինակ, Կամոյի շրջանի գյուղերում), երբ երիտասարդ ընտանիքները բավարարվել են տնամերձ հողամասերով, նրանց արտահոսքը լրիվ դադարել է, բարձրացել հանրային տնտեսության աշխատանքներին մասնակցելու ակտիվությունը:

Հանրապետությունում 1987 թ. շուրջ 24 հազար ընտանիք չուներ տնամերձ հողամաս, 54 հազար ընտանիքի հողամասերի չափերը նախատեսվող նորմաներից սակավ էին: Նպատակահարմար է գյուղական վայրերում, անհրաժեշտության դեպքում, նոր կազմավորվող ընտանիքներն ապահովել տնամերձ հողամասերով, անկախ այն բանից, նրանք ապրում են ծնողների հետ, թե առանձին ընտանիք են կազմում:



Ժամանակն է տնամերձ տնտեսության համար հողամասերի չափերը սահմանելիս նկատի առնել նաև հանրապետության տարբեր ռեգիոնների հողակլիմայական առանձնահատկությունները: Օրինակ, լեռնային շրջաններում, մասնավորապես աղետի գոտում պետք է անհետաձգելիորեն ավելացնել ընտանիքներին հատկացվող տնամերձ հողամասերի չափերը: Տեղին կլինի ծովի մակերևույթի բարձրությանը ուղիղ համեմատ ավելացնել տնամերձի համար հատկացվող հողամասերի չափերը: Ժամանակն է մտածել գյուղական բնակչությանը հատկացվող տնամերձ հողակտորների միասնական հավասար նորմա սահմանելու մասին: Իրոք, ինչո՞ւ պետտնտեսության բանվորի կամ ծառայողի ընտանիքներին որպես տնամերձ հողամաս պետք է հատկացնել ավելի փոքր հողակտոր, քան կոլտնտեսականների ընտանիքներին է հատկացվում: Դա իրական հիմքեր չունի: Ուստի, անհրաժեշտ է վերացնել պետտնտեսություններում աշխատող բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների ընտանիքներին հատկացվող տնամերձ հողամասերի նախատեսվող չափերի ներկայումս գոյություն ունեցող տարբերությունները, պետտնտեսություններում աշխատողներին որպես տնամերձ հատկացվող հողակտորների չափերը հասցնել կոլտնտեսականներին հատկացվող առավելագույն նորմաների չափերին:

Գյուղում իրականացվող համալիր միջոցառումների հետ այս ամենը կարող է հանգեցնել ծայրամասային գյուղական շրջաններից աշխատանքային ռեսուրսների արտահոսքի չափերի մեղմացմանը: Մինչդեռ առ այսօր գյուղից քաղաք կատարվող ակտիվ միգրացիան հանգեցրել է գյուղի բնակչության ծերացմանը, որի հետևանքով գյուղատնտեսական աշխատանքներում ընդգրկված են համեմատաբար տարիքավոր մարդիկ, իսկ դա ազդում է ոչ միայն արտադրողական ուժերի զարգացման ընդհանուր մակարդակի, այլև բնակչության վերարտադրության տեմպերի վրա:

---

# ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՀԱՄԱԼԻՐԻ ԵՆԹԱԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ ԵՎ ՆՐԱ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
**Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**

Կուսակցության Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումի մշակած ագրարային նոր քաղաքականությունը նպատակ ունի գյուղացուն դարձնել հողի տնտեսատեր, դրանով իսկ արագացնել պարենային պրոբլեմի լուծումը:

Ագրարային վերափոխումներն այժմ մեր երկրում իրագործվող քաղաքական ու տնտեսական ռեֆորմների օրգանական մասն են, որոնք կոչված են բավարարելու մարդու բազմազան պահանջմունքներն ու զարգացնելու նրա սոցիալական և աշխատանքային ակտիվությունը:

Մ. Ս. Գորբաչովը, պլենումում վերլուծելով արդի պայմաններում ԽՄԿԿ ագրարային քաղաքականությունը, նշեց. «Առանց մեր հասարակության կյանքի հեղափոխական նորացման, առանց դեմոկրատացման, առանց տնտեսավարման նոր գաղափարախոսության անկարելի է մեր էկոնոմիկայի բարձրարդյունավետ ագրարային հատվածի ստեղծումը: Միշտ նույն կերպ գյուղում արմատական փոփոխությունները պարտադիր պայման են երկրի տնտեսական ու սոցիալական առաջադիմության համար»:

Այսպիսով, ժամանակակից ագրարային քաղաքականությունը կուսակցության և ամբողջ ժողովրդի գործունեության կարևոր ուղղությունն է, հեղափոխական վերակառուցման անբաժանելի մասը և կոչված է արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումներ իրականացնելու գյուղում: Այն ամբողջ էկոնոմիկայի ներդաշնակ զարգացման կարևոր գործոն է, ամբողջական, բարդ և միասնական տնտեսական համակարգ: Նրա բոլոր օղակների միջև արտադրատեխնիկական և տնտեսական կապերի ընդլայնման շնորհիվ ձևավորվել է ժողովրդատնտեսական համալիրը: Դա արտադրության հանրայնացման բարձր աստիճանն է, որի հիմքում ընկած է արտադրամիջոցների հանրային սեփականությունը և տնտեսության պլանաչափ վարումը:

Արդի պայմաններում գյուղատնտեսության ինտեգրացիան արդյունաբերության և մյուս հարակից ճյուղերի հետ իրականացվում է ագրոարդյունաբերական համալիրի ձևավորման միջոցով: Այն կյանքի է կոչվել գիտատեխնիկական հեղափոխությամբ, որն արագացնում է աշխատանքի հասարակական բաժանման պրոցեսը, արտադրության մասնագիտացման, կոոպերացման և միջտնտեսային ինտեգրացման շնորհիվ զարգացնում, բարդացնում է տարբեր արտադրական ոլորտների փոխադարձ կապը: Ագրոարդյունաբերական համալիրի հետագա կատարելագործումը մեր երկրում բազմաթիվ անհետաձգելի սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման հիմնական ուղին է:

Ներկայումս սոցիալիստական արտադրահարաբերությունները բնութագրվում են նաև ագրարային հատվածում կատարվող խոր վերափոխումներով: Զարգանում է համալիրի նյութատեխնիկական բազան, մշակվում են արտադրության սկզբունքորեն նոր տեխնոլոգիաներ, որոնք, իրենց հերթին, պահանջում են արմատապես փոխել արտադրության կազմակերպումը, տնտեսական խթանման համակարգը և տնտեսա-

---

*ԳՐԻԳՈՐՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ՇԱՎԱՐՇԻ— Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնի վարիչ, տնտեսագիտության թեկնածու, դոցենտ։*

*ԱԲՐԱՀԱՄՅԱՆ ՍՎԵՏԼԱՆԱ ԽԱՉԻԿԻ— Երևանի բժշկական ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնի ավագ դասախոս։*



վարման մեխանիզմն ամբողջովին: Այս ամենում կարևորն այն է, որ հաղթահարվում է գյուղատնտեսության տեխնոլոգիական և սոցիալ-տնտեսական ավանդական մեկուսացվածությունը, ընդլայնվում են նրա արտադրական, տնտեսական կապերը արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի ենթակառուցվածքի ու շրջանառության ոլորտի հետ: Ամբողջ հասարակական արտադրությունը ձեռք է բերում զարգացման երկու՝ առաջին հայացքից հակադիր, սակայն, ըստ էության, օրգանապես փոխկապակցված միտում. մի կողմից տեղի է ունենում աշխատանքի հասարակական բաժանման խորացում, մյուս կողմից՝ միջճյուղային կապերի ընդլայնման շնորհիվ մեծանում է կոոպերացման դերը: Այդ միտումների ազդեցությամբ ժողովրդական տնտեսության մեջ կազմավորվում են արտադրության բազմաճյուղ համակարգեր: Ֆունկցիոնալ առումով դրանք արտադրական-տեխնոլոգիական աստիճանների կապակցված շղթա են: Յուրաքանչյուրը կոչված է կատարելու որոշակի տեխնոլոգիական ֆունկցիա: Բոլոր աստիճանների ամբողջականությունը կազմում է արտադրության արդյունքի վերջնական տեխնոլոգիական ցիկլը: Այստեղ ամենավառ արտահայտված և իր քանակական պարամետրերով ամենախոշոր ձևը ագրոարդյունաբերական համալիրն է (ԱԱՀ):

Ագրոարդյունաբերական համալիրի մեջ հիմնականը, նրա միջուկը, գյուղատնտեսական արտադրությունն է, որը ոչ միայն հումք է մատակարարում վերջնական արտադրանքի համար, այլև ունի յուրահատուկ օբյեկտիվ առանձնահատկություն՝ անվերարտադրելի է մասսայական մասշտաբներով: Ուստի գյուղատնտեսությունն է որոշում ագրոարդյունաբերական համալիրի մյուս ճյուղերի արտադրության ծավալը, աշխատանքի ռիթմը, զարգացման տեմպերը, կառուցվածքը:

Գիտատեխնիկական առաջադիմության արդի պայմաններում տեղի է ունենում հասարակական աշխատանքի բաժանման հետագա խորացում. ժողովրդատնտեսական համալիրի կառուցվածքում ձևավորվում են նոր համակարգեր՝ արտադրական և սոցիալական ենթակառուցվածքներ, որոնց դերը արտադրության համաչափ և աներ զարգացման համար ընդհանուր պայմանների ստեղծումն է: Ի դեպ, հասարակական արտադրության զարգացման ընթացքում անընդհատ մեծանում է այն օղակների նշանակությունը, որոնք կոչված են պատշաճ պայմաններ ապահովել արտադրողական ուժերի գործունեության համար:

Քանի դեռ մարդու պահանջմունքները և դրանք բավարարելու համար անհրաժեշտ բարիքների արտադրության շրջանակները նեղ էին, հասարակական արտադրության անխափան ընթացքն ապահովում էին հիմնականում բնական պայմանները: Սակայն անձնական և արտադրական պահանջմունքների աճը, որը կապված է նյութական արտադրության ընդլայնման հետ, զգալիորեն մեծացնում է արտադրության սպասարկող ճյուղերի և ոլորտների դերը:

Արտադրողական ուժերի այնպիսի տարրեր, ինչպիսիք են տրանսպորտը, կապի միջոցները, ջրամատակարարումը, նյութատեխնիկական մատակարարումը և այլն, պատմական զարգացման որոշակի աստիճանում, արտադրության պրոցեսի ընդհանուր պայմաններ ստեղծելու հետ մեկտեղ, աստիճանաբար սկսում են կատարել նաև սոցիալական ֆունկցիա արտադրողական ուժերի կարևոր տարրի՝ մարդու գործունեության համար: Արտադրողական ուժերի զարգացումը, հասարակական կյանքի տարբեր ոլորտների փոխկապակցվածության ուժեղացումը արտադրության պայմանները հարստացնում են նոր բաղադրամասերով:

Միասնական ժողովրդատնտեսական համալիրի ձևավորման ժամանակ սպասարկման ֆունկցիա կատարող առանձին ճյուղեր ու ոլորտներ անջատվում են և դառնում ինքնուրույն համակարգ, տնտեսության առանձին կառուցվածքային միավոր: Ներկայումս ժողովրդական տնտեսությունը հիմնական արտադրական կառուցվածքային օղակների և արտադրության ընդհանուր պայմաններ ապահովող օղակների՝ ենթակառուցվածքների ամբողջություն է: Դրանց ձևավորման և զարգացման վրա ազդում են հասարակական աշխատանքի բաժանման խորացման, արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների համապատասխանության ապահովման տնտեսական օրենքները: Դրանք արտահայտում են նյութատեխնիկական բազայի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունը և պայմանավորված են արտադրողական ուժերի և արտադրահարաբերությունների զարգացման որակական փոփոխություններով:

Ենթակառուցվածքը, որպես վերարտադրության տարր, բնութագրվում է մի շարք առանձնահատկություններով. առաջին, դրանում չի ստեղծվում նյութական առար-

կայական արդյունք, երկրորդ, դրա գործունեության արգասիքը կարող է սպառվել նաև արտադրության պրոցեսում և, երրորդ, այն պատկանում է արտադրության այնպիսի պայմանների թվին (մարդու աշխատանքով ստեղծված), որոնք անմիջականորեն չեն մասնակցում նյութական բարիքների արտադրության պրոցեսին: Ենթակառուցվածքային ծառայությունն իրականացվում է նյութական բարիքների բուն արտադրությունից դուրս և նրա անմիջական արդյունքը չէ, այլ հանդես է գալիս իր յուրահատուկ գործունեությամբ: Վերջինս հիմնված է սոցիալիստական արտադրաեղանակի հիմնական տնտեսական օրենքի պահանջների բավարարման վրա: Արտադրության և սոցիալական զարգացման համար ստեղծված ընդհանուր պայմանների համապատասխան, ենթակառուցվածքը բաժանվում է արտադրական և սոցիալական մասերի: Արտադրական ենթակառուցվածքի գործունեության շնորհիվ կազմավորվող հարաբերությունները նյութական արտադրության շրջանակներում արդյունքների շարժման հարաբերություններ են: Դրանց առաջացումը պայմանավորված է արտադրության և շրջանառության ոլորտների միջև փոխադարձ կապի և փոխազդեցության անհրաժեշտությամբ:

Գիտատեխնիկական առաջադիմության պրոցեսում ենթակառուցվածքը կատարում է երկակի դեր: Մի կողմից, ինչպես նշվեց, ինքը, չստեղծելով նյութական արժեքներ, կատարում է օժանդակ սպասարկող ֆունկցիա: Մյուս կողմից, այն անմիջականորեն խթանում է ժողովրդական տնտեսության զարգացումը, ակտիվորեն ներգործում արտադրության կազմակերպման և տեղաբաշխման վրա, ձևավորում բնակչության ապրելակերպը: Արտադրությունը առաջ է բերում տարբեր տեսակի սպասարկումների ընդլայնում և զարգացում, աշխատանքի հետագա բաժանում ու մասնագիտացում, աճում է դրա տեխնիկական հագեցվածությունը և դրանով իսկ տեղի է ունենում կառուցվածքային օղակների կազմակերպական անջատում՝ ենթակառուցվածքի ձևավորում:

Գյուղատնտեսական արտադրության ենթակառուցվածքի գլխավոր ճյուղերից մեկը ջրային ապահովվածությունն է՝ ջրանցքները, մելիորատիվ և ոռոգիչ կառուցվածքները, արդյունաբերության ջրամատակարարման համակարգը: Առհասարակ մարդու տնտեսական գործունեությունն աներևակայելի է առանց ջրային ռեսուրսների, որոնք օգտագործվում են ազգաբնակչության անձնական պահանջմունքների համար, արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում, այլ բնագավառներում: Ժողովրդական տնտեսության պահանջը թարմ ջրի նկատմամբ մշտապես աճում է: Պարզ է, որ առաջին հերթին յուրացվել են բնականորեն ավելի հարմար ջրային ռեսուրսները, որոնք համեմատաբար մեծ կապիտալ ծախսումներ ու բարդ կառույցներ չեն պահանջում: Յուրաքանչյուր ճյուղ և ձեռնարկություն իր համար ջրամատակարարման հարցերը լուծել է ինքնուրույնաբար:

50-ական թվականներից մեր երկրում սկսեցին կառուցվել հզոր և խոշոր հիդրոէլեկտրակայաններ, քաղաքների ջրամատակարարման կառույցներ, միլիոնավոր հեկտար հողատարածություններ դարձան ոռոգելի և ջրարբիացվեցին: Այդ ամենը պահանջեց ջրամատակարարման և ջրօգտագործման միասնական համակարգի ստեղծում, սկսվեց երկրի միջճյուղային ջրատնտեսական ենթակառուցվածքի ձևավորումը:

ԽՍՀՄ-ում ջրի անվերադարձ ծախսը հիմնականում կատարվում է ոռոգման միջոցով, որի բաժինը հասնում է տարեկան ծախսված ամբողջ ջրի 57 տոկոսին: Մեր հանրապետության տարածքում տարեկան միջին ջրային հոսքը 6,8 միլիարդ խորանարդ մետր է, որից ոռոգման նպատակով օգտագործվում է 2,6—2,8 մլրդ խոր. մետրը կամ ընդհանուրի 38—39 տոկոսը, արդյունաբերության մեջ՝ 0,4—0,5 մլրդ խոր. մետր (7,0—7,5 տոկոսը), կենցաղում՝ 0,6 մլրդ խոր. մետր (9 տոկոսը), մնացած 3 մլրդ խոր. մետրը (44 տոկոսը) հոսում է հանրապետության սահմաններից դուրս:

Հանրապետությունում ոռոգումը հիմնականում մակերեսային է (ակոսներով, մարգերով, կորիներով): Ոռոգման ներքին ցանցի անսարք վիճակը, անսիստեմ ոռոգումը, գյուղատնտեսության հողատեսքերի մեծ թեքությունները ջրի զգալի կորուստների պատճառ են դառնում: Մեզ մոտ արմատացած ոռոգման ձևն առաջ է բերում նաև ողողամաշման երևույթներ: Նպատակահարմար է լայնորեն կիրառել ոռոգման անձրևացման եղանակը, որը կրկնակի կբարձրացնի ջրի օգտագործման օգտակար գործակիցը և կկանխի հողի ողողամաշումը: Մենք պետք է այսօրվանից մտածենք նաև կաթիլային ոռոգմանն անցնելու մասին, որն ունի անհամեմատելի առավելություններ: Ամբողջությամբ վերցրած, հանրապետության միջճյուղային ջրա-



յին տնտեսության համակարգի կատարելագործումը ժողովրդական տնտեսությանը հնարավորություն կտա մինչև 2000 թվականը ստանալու լրացուցիչ ավելի քան 2 մլրդ ռուբլու արտադրանք:

Հայկական ԽՍՀ-ն ունի ջրային ռեսուրսների սահմանափակ պաշարներ: Ուստի, եթե հաշվի առնենք, որ յուրաքանչյուր 10 տարում ջրի սպառումը կրկնապատկվում է, ապա պարզ կդառնա թե սոցիալ-տնտեսական ինչպիսի մեծ նշանակություն ունի ջրային ռեսուրսների պահպանումը, դրանց ռացիոնալ ու արդյունավետ օգտագործումը: Այս ասպարեզում զգալի աշխատանքներ են նախատեսվում առաջիկա երկու տարում: Ոռոգելի հողատարածությունները պետք է հասցվեն 450—470 հազար հեկտարի: Շարունակվելու են Արարատյան դաշտում և Ախուրյան գետի ավազանում հողերի մելիորացման ծրագրի իրականացումը, Կապսի և Եղվարդի ջրամբարների շինարարությունը: Նոր ոռոգելի հողերը հնարավորություն կտան ավելացնելու խաղողի և մրգերի արտադրությունը, ինչպես նաև ստեղծելու կերի արտադրության կայուն բազա: Նշված միջոցառումները, անկասկած, ավելի կմեծացնեն պահանջարկը ջրի նկատմամբ: Ուստի ջրօգտագործման արդյունավետությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է այս ոլորտում ևս հրաժարվել գերատեսչական, վարչահրամայական մեթոդներից, անցնել կառավարման տնտեսագիտական եղանակների, տնտեսական նոր մեխանիզմի: Անթույլատրելի է, որ ջուրը օգտագործման է տրվում ձրի, այն պետք է ունենա գին, բայց դեռևս գնահատված չէ: Ջրի՝ տնտեսապես հիմնավորված վարձի սահմանումը կվերացնի դրա շռայլումներն ու վատնումները:

Մինչև 70-ական թվականների սկիզբը տրանսպորտը հիմնականում սպասարկում էր ժողովրդական տնտեսությանը, իսկ նրա բեռնաշրջանառությունն աճում էր հանրային համախառն արտադրանքին գերազանցող տեմպերով: Տրանսպորտի բոլոր տեսակների ընդհանուր ապրանքաշրջանառությունը սոցիալիստական շինարարության տարիներին աճեց 40 անգամ, սակայն այդ մակարդակը ձեռք բերվեց տրանսպորտային ցանցի դանդաղ ծավալման պայմաններում: Երկրի էկոնոմիկայի զարգացման պատմական իրադրությունը չապահովեց ենթակառուցվածքի՝ հատկապես մայրուղի տրանսպորտի և կապի տեխնիկական միջոցների առաջանցիկ տեմպերը:

Հանրապետությունում 1988 թվականին, 1970 թ. համեմատությամբ, ընդհանուր օգտագործման երկաթուղին ավելացել է 305 կմ կամ 54,2 տոկոսով, իսկ բեռնաշրջանառությունը՝ 78 տոկոսով: 1988 թվականին հանրապետության ավտոճանապարհների ընդհանուր երկարությունը կազմել է 42,300 կմ: Վերջին տասնութ տարիներին այն ավելացել է 13 տոկոսով, իսկ բեռնաշրջանառությունը՝ մոտ 4 անգամ: Նույն ժամանակաշրջանում հասարակական համախառն արտադրանքն աճել է 3 անգամ, արդյունաբերական արտադրանքը՝ 3,2 անգամ, գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ 65 տոկոսով, կապիտալ շինարարության ծավալը տրանսպորտում՝ 2,4 անգամ, բոլոր տեսակի տրանսպորտի բեռնաշրջանառությունը՝ 85 տոկոսով: Հայաստանում առաջիկա տարիներին նախատեսվում է կառուցել ընդամենը 237 կմ ավտոճանապարհներ կամ աճը կկազմի 3 տոկոս: Պարզ է, որ նման տեմպերը չեն կարող ապահովել հանրապետության ժողովրդական տնտեսության, այդ թվում նաև ագրոարդի համաչափ զարգացումը: Մինչև այժմ բեռնաշրջանառության սիստեմատիկ աճը դիտվել է որպես տրանսպորտի հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության չափանիշ՝ ժողովրդական տնտեսության մեջ շրջանառության ծախքերի կրճատման միջոց: Այդ սխալ մոտեցումը առաջ է բերել տրանսպորտի աշխատանքի և շահագործման ցուցանիշների վատթարացում: Երկար տարիներ նոր երկաթուղիների շինարարությունը ենթարկված էր երկրի նոր տնտեսական շրջանների յուրացման պահանջներին, այդ պատճառով նորակառույցները ոչ միայն չթեթևացրին գործող ուղիների բեռնվածությունը, այլ իրենց վրա վերցրին լրացուցիչ բեռների փոխադրումը:

Երկաթուղային տրանսպորտի աշխատանքների խափանումը, բեռների փոխադրման ժամկետների խախտումները, փոխադրման արագության իջեցումը բացատրվում են, առաջին հերթին, թողունակության ռեզերվների կրճատմամբ, առանձին տարիների տրանսպորտի համակարգի զարգացման անհամաչափությամբ:

Դանդաղ է զարգանում նաև ավտոխճուղիների ցանցը: Վերջին քսանհինգ տարում ԽՍՀՄ-ում կառուցվել են 556 հազար կմ ընդհանուր երկարությամբ մայրուղիներ, աճը կազմել է մոտ 3 անգամ: Երկրի հիմնական մայրուղիները ներկայումս խիստ ծանրաբեռնված են, ինչը զգալիորեն իջեցնում է ավտոմեքենաների շարժ-

ման արագությունը: Այդ պատճառով էլ առաջիկա տարիների անհետաձգելի խնդիրը նոր մայրուղիների կառուցումն է, դրանց կատարելագործումը: Արդիական տրանսպորտային համակարգի արագ զարգացումը կնպաստի ժողովրդական տնտեսության կայուն առաջընթացին, թույլ տրվող վիթխարի կորուստների էական կրճատմանը:

Տրանսպորտի ենթակառուցվածքի ենթահամակարգ են ոչ միայն մայրուղիները ու շարժական կազմը, այլև բեռնահոսքերը: Ժողովրդական տնտեսության ամբողջական հոսքագծից օգտվողների բազմաթիվ են ու բազմաձև, բարդ է դրանց փոխադարձ կապը և յուրաքանչյուր տեխնիկատնտեսական յուրահատկություն պահանջում է ամբողջ ապ... օղակների խիստ համաձայնեցում: Բեռնահոսքերի կարգավորման բնագավառում անհանդուրժելի է մեկուսացված գերատեսչական մոտեցումը, քանի որ երկրի մասշտաբով բացակայում է ժողովրդատնտեսական բեռների փոխադրման միասնական կառավարումը, իսկ տրանսպորտի տարբեր տեսակներ պատկանում են տա... մինիստրությունների և գերատեսչությունների: Այդ պատճառով էլ բեռների շար... դանդաղում է հատկապես տրանսպորտային հանգույցներում, որի հետևանքով արտադրության մեջ խափանումներ ու անհամամասնություններ են առաջ գալիս:

Շատ ձեռնարկություններում նման երևույթից զերծ մնալու համար ստեղծում են գերնորմատիվային ապրանքանյութական պաշարներ, որն, իր հերթին, իջեցնում է հասարակական արտադրության արդյունավետությունը: Պրոֆեսոր Ս. Ա. Հեյնմանի հաշվարկներով, 1970 թվականին ԽՍՀՄ արդյունաբերության մեջ այդպիսի պաշարները 100 ռուբլի համախառն արտադրանքի հաշվով կազմել են 10 ռ. 51 կոպ.՝ 1965 թ. 11 ռ. 30 կոպեկի դիմաց. 13 տարվա ընթացքում դրանք իջել են հազիվ 7 տոկոսով:

Հանրապետության ագրոարդի համալիրի ոլորտների միջև առաջ է եկել անհամամասնություն, կապված հատկապես նյութատեխնիկական մատակարարման հետ: Գյուղատնտեսական մեքենաների զգալի մասը համապատասխան պահեստամասեր չլինելու պատճառով անգործության է մատնված, մյուս կողմից՝ տնտեսությունների ղեկավարները ձգտում են կուտակել հնարավորին չափ շատ, գերնորմատիվային, հաճախ իրենց ոչ անհրաժեշտ պահեստամասեր, նպատակ ունենալով դրանք փոխանակել այլ տնտեսությունների հետ:

Գյուղատնտեսության նյութատեխնիկական մատակարարման ներկա կարգը, երբ տեխնիկան և պահեստամասերը բաշխվում են կենտրոնացված, ֆոնդավորված ձևով, տնտեսությունների մի մասում ստեղծում է դրանց ավելցուկ, իսկ մյուսներում՝ որոշակի պահանջարկ: Այդպիսի իրավիճակի շտկման հիմնական ուղին մեծածախ ազատ առևտրի լայն զարգացումն է: Նյութատեխնիկական մատակարարման առջև ներկայումս ծառացած է արտադրամիջոցներ արտադրողների և սպառողների փոխհարաբերության արմատական կատարելագործման, սպասարկման մակարդակի բարձրացման բարդ և պատասխանատու խնդիրը: Ժամանակակից պահանջներին համապատասխան պահեստային տնտեսության զարգացումը կարող է լուծել նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պրոբլեմը, ինչպես նաև ձեռնարկություններն ապահովել համաչափ աշխատանքի համար անհրաժեշտ արտադրության միջոցների նվազագույն պաշարներով:

Ենթակառուցվածքի համակարգում կարևոր դեր ունի տարային տնտեսությունը, որը նպաստում է արտադրության և շրջանառության արդյունավետության բարձրացմանը: Այս բնագավառում տեխնիկական առաջադիմության հիմնական ուղղությունը նրա քիմիացումն է: Սա հնարավորություն կտա մեքենայացնելու և ավտոմատացնելու փաթեթավորման պրոցեսները, ստեղծելու նոր ձևերի և հատկությունների տարա, դրանով իսկ կրճատելու արտադրանքի փոխադրման ժամկետներն ու մթերքի կորուստները, տնտեսելու արժեքավոր հումքը և նյութերը: Այնինչ ապրանքային ռեսուրսների պակասի պայմաններում մեր հանրապետությունում թույլ են տրվում կարտոֆիլի, բանջարեղենի, մրգերի զգալի կորուստներ՝ դրանց պահպանության և իրացման պրոցեսներում: Մանրածախ գների հաշվարկով այդ կորուստները կազմում են 3—5 մլն ռուբլի: Առևտրի ցանցում ստացվում է զգալի քանակությամբ անորակ, ապրանքային տեսքը կորցրած, անօգտագործելի մթերք: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ առևտրական ցանցում վաճառվող կարտոֆիլի 30, կաղամբի 35, մրգերի 15 տոկոսը չի համապատասխանում ստանդարտներին: Դա, ըստ էության, արհեստականորեն բարձրացնում է գները, որովհետև վաճառվող գյուղատնտեսական մթերքի զգալի մասն անօգտագործելի է դառնում: Անբավարար են մթերքի պահ-



պանման պայմանները, քանի որ հանրապետության պահեստատների կարողությունների մեկ քառորդը ապահովված չէ մեքենայական սառեցման կամ ակտիվ օդափոխության հարմարանքներով:

Համարյա բացակայում է մթերքի փոխադրումը և պահպանումը բեռնարկղերում: 1988 թ. մթերող կազմակերպություններն առհասարակ չեն օգտագործել բեռնարկղեր, իսկ երկարատև պահպանման համար՝ հազիվ 30 տոկոսի չափով: Կարտոֆիլը, կաղամբը, գազարը պահեստատներում պահպանվում են իրար վրա թափված, ինչն առաջ է բերում արագ փչացում: Մինչև պահեստավորումը մթերքը չի տեսակավորվում, փաթեթավորվում և չի պահպանվում հատուկ տարաների մեջ:

Հանրապետական պետվիճկոմի ընտրովի ստուգումներից մեկի ժամանակ պարզվել է, որ միայն հացահատիկ փոխադրելիս կորուստները կազմել են 1037 տոննա կամ 103 հազար ռուբլի: Հացահատիկի ամբողջ կորուստը մթերման, փոխադրման, պահպանման և իրացման բոլոր փուլերում հասնում է 15 տոկոսի:

Գյուղատնտեսական մթերքի մեծ կորուստներ են թույլ տրվում պահպանման ժամանակ: 1986 թվականին հացահատիկի կորուստները կազմել են 596 տոննա, ալյուրինը՝ 17 հազար 268 տոննա, սեռմիինը՝ 9060 տոննա և այլն: Դրամական արտահայտությամբ, պահպանման ժամանակ հանրապետության բոլոր տնտեսություններում կորուստները կազմել են՝ 1985 թվականին 8,4 մլն ռուբլի, 1986 թվականին՝ 6,9 մլն ռուբլի, ոչնչով չի փոխվել վիճակը 1987—1988 թթ.: Հանրապետությունում մեծ են անասնաբուծական մթերքի կորուստները անասունների անկումների, հիվանդությունների պատճառով: Ըստ հաշվեկշռային արժեքի, դրանց հետևանքով ժողովրդական տնտեսությանը հասցված վնասը կազմում է շուրջ 10 միլիոն ռուբլի:

Ժամանակակից հասարակությունը չի կարող նորմալ ապրել և զարգանալ առանց ինֆորմացիոն ծառայության: Կյանքը ցույց է տալիս, որ ինֆորմացիայի զարգացման տեմպերը գերազանցում են տնտեսության առաջընթացի տեմպերին: Յուրաքանչյուր տարի մեր հանրապետությունում հասցեատերերին է հանձնվում 75 մլն նամակ, 385 մլն թերթ և ամսագիր, էլեկտրակապի միջոցով իրականացվում է 27,7 մլն խոսակցություն, օգտագործվում են ավելի քան 550 հազար հեռախոսային ապարատներ: Սակայն կապը միայն փոստը, հեռախոսը, հեռագրատունը, հեռուստացույցը և ռադիոն չէ: Այն ներառում է նաև տվյալների հաղորդումը հաշվողական կենտրոնին, ծառայողական բազմաբնույթ լրատվությունները և այլն: Կապի միջոցները, այսպիսով, նույնպես արտադրողական ուժերի անհրաժեշտ տարր և տեխնիկական առաջադիմության կարևոր օղակ են: Դրանց արդյունավետությամբ են պայմանավորված ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անխափան փոխգործողությունը, օպերատիվ և ճկուն կառավարումը, սպառողների ժամանակի տնտեսումը: Այդ միջոցները նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրության մեջ կորուստների կրճատմանը և ինքնարժեքի իջեցմանը, նյութատեխնիկական մատակարարման բարելավմանը և շրջանառու միջոցների պտույտի արագացմանը: Իսկ դա, վերջին հաշվով, նպաստում է հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճին:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ էլեկտրակապի մեջ 1 ռուբլի կապիտալ ներդրումներից ժողովրդական տնտեսությունը տարեկան ստանում է 3 ռուբլու խնայողություն կամ մոտ երկու ռուբլու եկամուտ:

Գյուղատնտեսական արտադրության առանձնահատկության՝ նրա տարածքային բնույթի պայմաններում մեծ նշանակություն է ձեռք բերում կապը, որը կարևոր դեր է խաղում արտադրության արդյունավետության բարձրացման, կառավարման օպերատիվության ուժեղացման, մեքենաների անսարքությունների անհապաղ կըրճատման, տեխնիկատնտեսական նյութերի մշակման և վերլուծության գործում: Չնայած կապի օբյեկտիվ անհրաժեշտությանը և ժողովրդատնտեսական նշանակությանը, նրա մակարդակը և սպասարկման որակը չեն բավարարում ժամանակակից պահանջները: Կապի զարգացմանը հատկացվում է ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումների 0,8 տոկոսը, որը մոտ 3 անգամ քիչ է, քան Եվրոպայի զարգացած կապիտալիստական երկրներում: Հասարակական համախառն արդյունքի մեջ նրա տեսակարար կշիռը կազմում է 0,6 տոկոս, իսկ ազգային եկամտի մեջ՝ 0,9 տոկոս: Ի վերջո, կապի զարգացման բարձր տեմպերը նպաստում են տնտեսական կարևորագույն համամասնությունների ձևավորմանը, որի պահպանմամբ մեծապես պայմանավորված է ագրոարդյունաբերական համալիրի արդյունավետության բարձրացումը:

Ժողովրդական տնտեսության ենթակառուցվածքի ապահովվածության չափա-

նիշը դրա զարգացման մակարդակի համապատասխանությունն է նյութական ար-
տադրության ճյուղերի հետ: Իսկ համապատասխանությունը կարելի է որոշել միայն
դրանց փոխազդեցության վերլուծությամբ և առաջին հերթին ենթակառուցվածքի թե-
րի ապահովվածության հետևանքով ժողտնտեսության կրած վնասի չափով: Այդ կա-
պակցությամբ Մ. Ս. Գորբաչովը ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան (1989 թ.) պլենումում
նշեց. «Խոսելով պարենային պրոբլեմի լուծման տեսանկյունից ագրոարդյունաբերա-
կան համալիրի արդիական բազայի ձևավորման մասին, չի կարելի շրջանցել նաև
գյուղատնտեսական մթերքները հավաքելիս, փոխադրելիս, պահպանելիս ու վերա-
մշակելիս թույլ տրվող կորուստների հարցը:
Հացահատիկի բերքահավաքի ու մշակման ժամանակ մեր կորուստները հաս-
նում են 15, իսկ երբեմն՝ 20 միլիոն տոննայի: Մոտավորապես նույնքան է կորչում
պահպանության ու վերամշակման փուլում»:
Փորձագետների մոտավոր գնահատմամբ ժողովրդական տնտեսության կրած
վնասը միջճյուղային ենթակառուցվածքի թերի զարգացման հետևանքով տարեկան
կազմում է մի քանի տասնյակ միլիարդ ռուբլի:
Գյուղատնտեսական մթերքի փչացման հիմնական պատճառներն են տրանս-
պորտի ցանցի թերի զարգացումը, ցածր արագությունը, ոչ համապատասխան տը-
րանսպորտով և առանց բեռնարկղերի փոխադրելը (30 տոկոս), մթերքը վատ պա-
հեստատներում, ոչ բեռնարկղերում և համապատասխան տարաներում պահպանելը
(20 տոկոս), ջուր չլինելը կամ աղտոտված ջուր օգտագործելը (15 տոկոս), նյութա-
տեխնիկական վատ մատակարարումը, մթերման անբավարար կազմակերպումը, ին-
ժեներական ենթակառուցվածքի թերի զարգացումը (15 տոկոս) և այլն:
Արտադրության մասշտաբների աճով և կազմակերպական-տնտեսական մեխա-
նիզմի բարդացմամբ մեծանում է ենթակառուցվածքի դերը: Այդ պատճառով էլ են-
թակառուցվածքի և նյութական արտադրության բազային ճյուղերի զարգացման ան-
կա անհամամասնությունները կարող են հանգեցնել կորուստների մեծացման: Են-
թակառուցվածքի զարգացման անբավարար մակարդակը և նրա կողմից ժողովրդա-
կան տնտեսության սպասարկման ցածր որակը պայմանավորված են հետպատե-
րազմյան տարիների ինվեստիցիոն քաղաքականությամբ, երբ մշտապես նվազում
էր տրանսպորտի՝ հատկապես երկաթուղային տրանսպորտի մեջ կապիտալ ներ-
դրումների տեսակարար կշիռը: Եթե 1918—1940 թթ. այն կազմել է 10,4 տոկոս, 1940
թվականին՝ 12,2, ապա VII հնգամյակում՝ 3,2, VIII, IX և X հնգամյակներում՝ 2,6—
2,7 տոկոս, XI հնգամյակում՝ 2,4—2,5 տոկոս: Նման իրավիճակի պահպանման դեպ-
քում կորուստներն ավելի կմեծանան:
Ենթակառուցվածքի հետ մնալը կարելի է հաղթահարել միայն ժողովրդական
տնտեսության ճյուղերի զարգացման նպատակային ծրագրի իրականացման միջո-
ցով: Դրանք կարող են վերաբերվել ենթակառուցվածքի ոչ թե մեկ, այլ մի քանի
համակարգերի:
Ակնհայտ է տրանսպորտապահեստային համակարգի զարգացման գիտականո-
րեն հիմնավորված ծրագրի մշակման անհրաժեշտությունը: Այն պետք է հաշվի առ-
նի տրանսպորտի և պահեստային տնտեսության հզորությունների փոխադարձ փո-
խարինումը: Դրանց միջև անհամաձայնությունը հանգեցնում է ժողովրդատնտեսա-
կան մեծ կորուստների: Կարևոր խնդիր է նաև ենթակառուցվածքի տնտեսական
մեխանիզմի փոխգործողության կատարելագործումը նյութական արտադրության և
բնակչության սպասարկման ոլորտի հետ:
Ենթակառուցվածքի առանձնահատկություններից են բխում դրա ցուցանիշների
պլանավորման դժվարությունները: Ներկայումս ընդունված է հիմնականում բնեղեն
ցուցանիշը (տրանսպորտում՝ բեռնաշրջանառությունը, ջրային տնտեսությունում՝ խո-
րանարդ մետր ջուրը և այլն), որը չի խթանում ենթակառուցվածքի արդյունավետ
գործունեությունը և դինամիկ զարգացումը: Նպատակահարմար է անցնել արժեքա-
յին ցուցանիշների:
ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումը կրկին ընդգծեց, որ էկոնոմիկայի
առողջացման խնդիրը միանգամայն իրագործելի է, եթե ամբողջ աշխատանքը նպա-
տակամղվի դրա ինտենսիվացմանը և գիտատեխնիկական առաջադիմության արա-
գացմանը, հիմնովին վերակառուցվեն կառավարումն ու պլանավորումը, կառուցված-
քային ու ինվեստիցիոն քաղաքականությունը, ամենուրեք բարձրացվեն կազմակերպ-
վածությունն ու կարգապահությունը, արմատապես բարելավվի գործունեության ոճը:



# ԱԶԳԱՄԻՋՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ արդի ժամանակաշրջանն առավել բացահայտեց ազգամիջյան հարաբերությունների բնագավառում տարիներ շարունակ կուտակված պրոբլեմները, որոնց ուսումնասիրման ու լուծման ուղիների բացահայտումը մեր ժամանակի հրատապ խնդիրներից է: Այն պահանջում է նոր իրադրության խոր ուսումնասիրություն և կարծիքների համբերատար ու լուրջ հաշվառում:

Ստալինյան բռնությունների տարիներին Ստալինին որպես «ժողովուրդների մեծ առաջնորդի ու հարազատ հոր», «լենինյան ազգային քաղաքականության ստեղծողի ու զարգացնողի», «մարդկության երջանկության դարբնողի» և այլ էպիտետներով մեծարելը, նրան բոլոր հարցերում անառարկելի հեղինակություն «ճանաչելը», նացիոնալիզմի խրտվիլակով իսկական հայրենասերներին ահաբեկելը նախկինում հնարավորություն չէին տալիս բացահայտելու այն աղավաղումներն ու ազգային հարցում լենինիզմի տեսությունից ու պրակտիկայից նահանջը, որոնք տասնամյակների ընթացքում կյանքի նորմ էին դարձել ու շարունակվեցին նաև լճացման տարիներին:

Ազգային հարաբերությունների բնագավառում չի կարելի դիմել բռնության, կամային ճնշման՝ ում կողմից էլ որ դա լինի: Լենինյան ազգային քաղաքականությանն ըստ էության հակառակ Ստալինի հրամանները նրա շրջապատը պարտադրում էր ժողովրդին, իսկ նրանք, ովքեր փորձում էին առարկել, դատապարտվում էին, շատ դեպքերում էլ ֆիզիկապես ոչնչացվում: Մինչդեռ այդպես չէր խորհրդային իշխանության առաջին տարիներին, երբ մեր հասարակությունը գլխավորում էր Վ. Ի. Լենինը: Հայտնի է, որ դեռևս իր գործունեության վաղ շրջանում նա պայքարել է ոչ ռուս ազգությունների ազգային արժանապատվությունը ոտնահարողների դեմ: «Ոչ մի բան այնպես չի կասեցնում պրոլետարական դասակարգային համերաշխության զարգացումն ու ամրապնդումը, ինչպես ազգային անարդարությունը»,— շեշտում էր Վ. Ի. Լենինը (**ԵԼԺ**, հ. 45, էջ 425): Ազգային հարցի լուծման ստալինյան մոտեցումը հակասում էր լենինյանին: Ստալինն ամեն կերպ աշխատում էր արագացնել ազգերի և ժողովուրդների ձուլման պրոցեսը: Հենց նրա ժամանակ էր, որ զարգացան ժողովուրդների լոզունգային բարեկամությունը, ցուցադրական միջոցառումները, որոնք ոչ միայն չնպաստեցին ազգային հարաբերությունների բարելավմանը, այլ՝ ընդհակառակը, սրեցին, խճողեցին դրանք, առաջացրին նոր պրոբլեմներ: ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի ընդունած «Ազգամիջյան հարաբերությունների մասին» բանաձևում ասված է. «Ամեն մի ազգային պրոբլեմ պահանջում է կշռադատված, համակողմանի մոտեցում՝ յուրաքանչյուր կոնկրետ իրավիճակի խոր վերլուծության և օբյեկտիվ գնահատականների հիման վրա: Այն պետք է լուծել հանգիստ, անչափ պատասխանատու կերպով, սոցիալիստական դեմոկրատիայի և

*ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ ԳԵՎՈՐԳ ԲԱԳՐԱՏԻ— ՀԽՍՀ ԳԱ ակադեմիկոս, Հանրապետության ԳԱ գիտական ինֆորմացիայի կենտրոնի դիրեկտոր:*

օրինականության շրջանակներում, նախ և առաջ, միմյանց ընդառաջ արվող քայլերի միջոցով, ճկատի առնելով հեղափոխական նորացման ծավալված պրոցեսները, առանց վնաս հասցնելու խորհրդային ժողովրդի ինտերնացիոնալ համախմբվածությանը: Պետք է բանը հանգեցնել այնպիսի հասարակական մթնոլորտի ստեղծմանը, որի պայմաններում ցանկացած ազգության պատկանող մարդը մեր սոցիալիստական հայրենիքի ցանկացած մասում իրեն զգա ինչպես տանը» (**ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի նյութերը:** «Հայաստան» հրատ., 1988, էջ 189):

Ժամանակակից ազգային քաղաքականությունը կարիք ունի գիտատեսական խոր մշակման, որը պետք է հենվի ազգամիջյան հարաբերությունների վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքի և սոցիալիստական շինարարության պրակտիկայի վերլուծության վրա:

Ազգերի ազատության ու անկախության մասին հիմնարար դրույթները շարադրել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը: Նշելով, որ ազատ չի կարող լինել այն ժողովուրդը, որը ճնշում է ուրիշ ժողովուրդների, 1882 թ. փետրվարի 7-ին Կ. Կաուցկուն ուղղված նամակում Էնգելսը նշում էր, որ պրոլետարիատի ինտերնացիոնալ շարժումն ընդհանրապես հնարավոր է միայն ինքնուրույն ազգերի միջավայրում, որ առավել ինտերնացիոնալ լինելու գլխավոր պայմանն իրոք ազգային լինելն է (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 35, стр. 220, 222):

Զարգացնելով Մարքսի և Էնգելսի տեսական ժառանգությունը ազգային հարցի մասին, հարստացնելով այն խորհրդային երկրում ազգային շինարարության առաջին տարիների փորձի խոր վերլուծությամբ՝ Լենինը ցույց տվեց ազգամիջյան հարաբերությունների բարելավման ուղիները: Նա խորհուրդ էր տալիս ծայրահեղ զգույշ լինել ճնշված ազգերի նացիոնալիզմի նկատմամբ, հմտորեն հաշվի առնել ազգայինի և ինտերնացիոնալի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության հարաբերակցությունը, նրանց դիալեկտիկական միասնությունը:

Դեռևս 1913—1914 թթ., խորապես հիմնավորելով ազգային հարցի վերաբերյալ կուսակցության տեսությունն ու քաղաքականությունը, Լենինը շեշտում էր ազգային հարցի կարևորագույն նշանակությունը՝ որպես դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում պրոլետարիատի ռեզերվների և դաշնակիցների վերաբերյալ հարց: Ճնշված ազգի նացիոնալիզմը Լենինը համարում էր բուրժուաառաջադիմական, նույնիսկ բուրժուադեմոկրատական (տե՛ս **ԵԼԺ**, հ. 24, էջ 461): «Ճնշված ազգի **յուրաքանչյուր** բուրժուական նացիոնալիզմի մեջ,— գրում էր Լենինը 1914 թ.,— կա համադեմոկրատական բովանդակություն, **ընդդեմ** ճնշման, և հենց այդ բովանդակությունն է, որ մենք **անպայման** պաշտպանում ենք, խիստ զատելով իր ազգային բացառիկության ձգտումը...» (**ԵԼԺ**, հ. 25, էջ 332):

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո Լենինը զգուշացնում էր խստորեն հաշվի առնել ժողովուրդների ու երկրների միջև գոյություն ունեցող ազգային ու պետական տարբերությունները, «...յուրաքանչյուր երկրին **կոնկրետ** մոտեցում ունենալով, հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգայինառանձնահատուկը, ազգային-յուրահատուկը՝ **միասնական** ինտերնացիոնալ խնդիրը լուծելու համար» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 95):

Վ. Ի. Լենինի մտահղացումներն ու գործողություններն անհրաժեշտ է վճռականորեն սահմանազատել ազգային քաղաքականության բնագավառում ստալինյան աղավաղումներից, ազգային քաղաքականության սկզբունքների այն իրական ձևախեղումներից, որը հատուկ էր անձի պաշտամունքի և լճացման շրջանին:

Հակառակ Լենինի խոր վերլուծություններին և նախազգուշացումներին, ինչպես Խորհրդային Միությունում, այնպես էլ սոցիալիստական երկրներում ազգային հարցը «լուծված» համարվեց ազգերի ինքնորոշման և իրավահավասարության սկզբունքի սոսկ հռչակումով:

Երկար տարիներ, հակառակ փաստերին և պատմական ճշմարտությանը, Ստալինը Լենինի հետ հավասար համարվում էր կուսակցության ազգային քաղաքականության մշակող և Խորհրդային Միության ստեղծող:

1922 թ. դեկտեմբերի 30-ին Վ. Ի. Լենինի թելադրած ««Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը» նամակում խորհրդային հանրապետությունները՝ Ուկրաինան, Բելոռուսիան, Հայաստանը, Վրաստանը, Ադրբեջանը Ռուսաստանյան ֆեդերացիայի մեջ մտնելու միջոցով միավորելու և դրանք ավտոնոմ հանրապետություններ դարձնելու վերաբերյալ Ստալինի առաջարկությունը Լենինը գնահատեց որպես նահանջ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից, ան-



համապատասխան խորհրդային ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման խնդիրներին: Ցեշտելով, որ այդ «ավտոնոմիզացիայի» մասին ամբողջ հնարանքն արմատապես սխալ է ու ոչ ժամանակին՝ Լենինը գրում է. «Ես կարծում եմ, որ այստեղ ճակատագրական դեր են խաղացել Ստալինի շտապողականությունն ու վարչարարությամբ հրապուրվելը, ինչպես և նրա զայրույթը տխրահռչակ «սոցիալ-նացիոնալիզմի» դեմ» (**ԵԼԺ**, հ. 45, էջ 422):

Խորհրդային ֆեդերացիայի մասին անցյալում իր մշակած սկզբունքներից ելնելով, ընդհանրացնելով մեր երկրի ազգային շինարարության փորձը՝ Լենինն առաջ քաշեց խորհրդային հանրապետությունների՝ իրավահավասար, ինքնուրույն, կամավոր միավորման հիման վրա ԽՍՀՄ ստեղծելու գաղափարը: Նա նախազգուշացնում էր չափից ավելի ցենտրալիզմի դեմ, ընդգծում յուրաքանչյուր հանրապետության ինքնուրույնությունն ամրապնդելու անհրաժեշտությունը՝ որպես ժողովուրդների համախմբման պարտադիր պայման:

Նամակում Լենինը նշում է, որ ընդհանրապես նացիոնալիզմի վերացական հարցադրումը ոչ մի բանի պետք չէ: «Պետք է տարբերել ճնշող ազգի նացիոնալիզմը և ճնշված ազգի նացիոնալիզմը, մեծ ազգի նացիոնալիզմը և փոքր ազգի նացիոնալիզմը... Մեծ ազգի նացիոնալներս գրեթե միշտ մեղավոր ենք լինում անթիվ անհամար բռնությունների մեջ, և նույնիսկ ավելին՝ մեզ համար աննկատելիորեն գործադրում ենք անսահման քանակությամբ բռնություններ ու վիրավորանքներ» (Նույն տեղը, էջ 423):

Ազգային հարցին մեծ ուշադրություն նվիրեց ՌԿ(բ)Կ VIII համագումարը (1919 թ. մարտ): Կուսակցության նոր ծրագրի նախագծի քննարկման ժամանակ նշվեց, որ այնպիսի բազմազգ երկրում, ինչպիսին Ռուսաստանն է, սոցիալիզմի հաղթանակի համար հաջող պայքարի կարևորագույն պայմաններից է ազգերի ինքնորոշման իրավունքի՝ ընդհուպ մինչև անջատվելն ու ինքնուրույն պետություն կազմելը, կուսակցության ծրագրային պահանջի հետևողական իրականացումը: Հատկապես շեշտվեց, որ նախկինում ճնշող ազգի պրոլետարիատը պետք է ուշադիր վերաբերվի նախկինում ճնշված աշխատավոր մասսաների ազգային զգացմունքներին: Պաշտպանելով խորհրդային հանրապետությունների ֆեդերացիայի ստեղծման լենինյան դիրքորոշումը, Ա. Ի. Ռիկովը համագումարում նշեց, որ ազգի, լեզվի, կրոնի, մշակույթի և այլ շահերը ոչ մի դեպքում և ոչ մի պայմաններում չպետք է ճնշել: Համագումարը չպաշտպանեց «ազգերի ինքնորոշման» լոզունգը, մեկ այլ՝ «միայն աշխատավոր դասակարգերի ինքնորոշման իրավունքի ճանաչում» լոզունգով փոխարինելու վերաբերյալ Գ. Լ. Պյատակովի և Ն. Ի. Բուխարինի առաջարկությունը: «Յուրաքանչյուր ազգ,— նշեց Լենինը համագումարում,— պետք է ստանա ինքնորոշման իրավունք, և դա կնպաստի աշխատավորների ինքնորոշմանը... Առանձնապես պետք է զգույշ լինել զանազան ազգերի վերաբերմամբ, որովհետև չկա ավելի վատ բան, քան ազգի անվստահությունը» (**ԵԼԺ**, հ. 38, էջ 202): Քննադատելով ՌԽՖՍՀ լուսավորության կոմիսարիատի կամ նրա շուրջը եղած այն կոմունիստներին, որոնք ասում էին՝ դպրոցը միասնական է, ուստի չհամարձակվեք ուրիշ լեզվով սովորեցնել, բացի ռուսերենից, Լենինը նշեց. «Իմ կարծիքով, նման կոմունիստը վելիկոռուսական շովինիստ է: Նա նստած է շատերիս մեջ, և նրա դեմ պետք է պայքարել» (Նույն տեղը, էջ 230):

Հաշվի առնելով խորհրդային իշխանության առաջին տարիներին ազգամիջյան հարաբերություններում ստեղծված պայմանները, Վ. Ի. Լենինն իր թելադրած ««Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը» նամակում նշում է, որ «...ավելի լավ է չափազանցել ազգային փոքրամասնությունների նկատմամբ զիջողականության ու մեղմության կողմը, քան չչափազանցել: Ահա թե ինչու տվյալ դեպքում պրոլետարական համերաշխության, հետևաբար և պրոլետարական դասակարգային պայքարի արմատական շահը պահանջում է, որ մենք երբեք ձևականորեն չվերաբերվենք ազգային հարցին, այլ միշտ էլ հաշվի առնենք ճնշող (կամ մեծ) ազգի նկատմամբ ճնշվող (կամ փոքր) ազգի պրոլետարի վերաբերմունքի անպայման տարբերությունը» (**ԵԼԺ**, հ. 45, էջ 425):

Լենինը բազմիցս քննադատել է Ստալինի՝ որպես կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղարի, հանրապետությունների միավորման ժամանակ թույլ տված լուրջ սխալները: 1923 թ. ապրիլին ՌԿ(բ)Կ XII համագումարում, որին Լենինը հիվանդության պատճառով չէր մասնակցում, հիշյալ նամակը հրապարակվեց ըստ պատգամավորությունների: Համագումարում ազգային հարցի մասին զեկուցումով

հանդես եկավ Ստալինը: Այդ առնչությամբ ելույթ ունեցողներն անդրադառնում էին «Իլյիչի շկոլային», որով հպարտանում էր կուսակցությունը: Միաժամանակ նրանք քննադատում էին Ստալինի սխալները: 1890 թվականից կուսանդամ, Դոնեցկի կազմակերպությունից պատգամավոր Ժ. Խ. Ռակովսկին իր ելույթում նշում է. «Եթե մի շարք պատճառներով մենք պետք է ափսոսանք, որ Վլադիմիր Իլյիչը մեզ հետ չէ, ապա ազգային հարցը այդ պատճառներից մեկն է: Անհրաժեշտ էին նրա հեղինակությունը ոչ միայն ներքին, այլև միջազգային իրադրության նրա ըմբռնումը, պետք էր, որպեսզի նա իր հեղինակավոր խոսքով ահեղաձայն խփեր մեր կուսակցությանը և նրան ցույց տար, որ ազգային հարցում ճակատագրական սխալներ է թույլ տալիս» (XII съезд РКП(б) Стенографический отчет. М., 1968, стр 577):

«Հին ժառանգության ցայտուն արտահայտություններից մեկը պետք է համարել այն փաստը, որ կենտրոնում ու տեղերում խորհրդային չինովնիկների մի զգալի մասը Հանրապետությունների Միությունը գնահատում է ոչ թե որպես իրավահավասար պետական միավորների միություն, որը կոչված է ապահովելու ազգային հանրապետությունների ազատ զարգացումը, այլ որպես դեպի այդ հանրապետությունների վերացումը տանող մի քայլ, որպես այսպես կոչված «միասնական-անբաժանելին» կազմելու սկիզբը» (**ԽՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում**, հ. 3, Ե., 1987, էջ 109):

Այս առաջին հերթին վերաբերում էր Ստալինին, որը համագումարից հետո էլ շարունակում էր խոսքով ընդունել, բայց գործով հակադրվել լենինյան ազգային քաղաքականությանը: Այդ մասին Գ. Ե. Զինովևը Կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի նախագահության 1927 թ. հունիսի 24-ի նիստում նշել է, որ Ստալինը խախտել է կարգապահությունն ազգային հարցում և մի շարք սխալներ թույլ տվել, որ այժմ էլ ազգային հարցում առկա է ստալինյան սխալ քաղաքականություն մի շարք հանրապետություններում, որ մեզ մոտ ծաղկում է հրամայելն ու «գաղութատիրությունը»: Ազգային հարցում Ստալինի ծայրահեղ անսկզբունքային քաղաքականության հետևանքով արհեստականորեն հորինում են «ձախեր» և «աջեր», ապա կազմակերպում նրանց ճակատ-ճակատի բախումը:

Ստալինի շրջապատը նրա հասցեին եղած այս քննադատությունը վերագրեց որպես ամբողջ կուսակցության դեմ ուղղված քննադատություն: Ստալինին քննադատողների ճնշող մեծամասնությունը հետապնդվեց և ոչնչացվեց: Ազգային, ինչպես նաև այլ հարցերում Ստալինի թույլ տված սխալների դառը պտուղները մինչև այժմ էլ զգացվում են:

Ոչ թե որպես կուրյոզ, այլ որպես այն ժամանակվա համար բնորոշ փաստ կարելի է նշել, որ «ժողովրդի թշնամի» Բուդու Մդիվանու գործը հետաքննելիս նրան ասում են. «Ձեր բնակարանը խուզարկելիս հայտնաբերվել են հակահեղափոխական տրոցկիստական կազմակերպության կողմից բազմացված կուսակցական փաստաթղթեր ազգային և ներկուսակցական հարցերի վերաբերյալ»: Այդպիսիք համարվել են՝ «Լենինի կտակը», «Ազգությունների և «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը» լենինյան աշխատության մեքենագրված տեքստը («Заря Востока», 3 մարտի 1989 թ.): 1956 թ. հին կոմունիստ, լենինյան Բուդու Մդիվանին դատական գծով արդարացվում է: 1961 թ. նրա թոռը՝ Վախտանգ Մդիվանին դիմում է ԽՄԿԿ Կենտկոմին կից կուսակցական վերահսկողության կոմիտեին, որի նախագահը Ն. Շվերնիկն էր. նրան արդարացնելու նաև կուսակցական գծով: Կոմիտեից պատասխանում են. Բ. Մդիվանին «1936 թվականին ճիշտ է վտարվել կուսակցությունից». Նրա դեմ հարուցված մեղադրանքը այսպես կոչված վրացական տրոցկիստական կենտրոնի անդամ և կուսակցության դեմ վրացական նացիոնալ-ուկլոնիստների պայքարի կազմակերպիչ լինելն էր: Մինչդեռ Վ. Ի. Լենինը 1923 թ. մարտի 6-ին, իր թելադրած վերջին՝ «Ընկ. ընկ. Մդիվանուն, Մախարաձեին և մյուսն., պատճենը ընկ. ընկ. Տրոցկուն և Կամենևին» փաստաթղթում նշում էր. «Հարգելի ընկերնե՛ր, ամբողջ հոգով հետևում եմ ձեր գործին: Վրդովված եմ Օրջոնիկիձեի կոպտությունից և Ստալինի ու Ձերժինսկու թողտվություններից: Ձեզ համար պատրաստում եմ երկտողեր և ճառ» (**ԵԼԺ**, հ. 54, էջ 393):

Քննադատելով Մդիվանու և նրա կողմնակիցների սխալները Անդրկովկասի ֆեդերացիայի և ԽՍՀՄ կազմավորման հարցերում՝ Լենինը միաժամանակ շեշտում էր, որ այդ ժամանակ հիմնական վտանգը մեծապետական շովինիզմի մեջ է և դրա դեմ պայքարի խնդիրը առաջին հերթին ընկնում է նախկինում տիրապետող ազգի



կոմունիստների ուսերին: Ահա թե ինչու Լենինն իր ուշադրությունը կենտրոնացնում էր «վրացական հարցում» Ստալինի, Ձերժինսկու և Օրջոնիկիձեի թույլ տված սխալների վրա:

1988 թ. հոկտեմբերի 19-ին Վրաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի նիստում Բ. Գ. Մդիվանին արդարացվում է նաև կուսակցական գծով (հետմահու) («Заря Востока», 3 մարտի, 1989 թ.):

Ցավոք, հասարակական գիտությունները դեռևս շատ քիչ բան են արել ազգային պրոբլեմների բնագավառում պատմական ճշմարտությունը լուսաբանելու, ազգային քաղաքականության լենինյան նորմերին վերադառնալու ուղղությամբ: Դա վերաբերում է նաև պատմական անցյալի այնպիսի կարևոր պրոբլեմի, ինչպիսին ժողովուրդների միավորումն է ցարական կայսրության կազմում: «Դրուժբա նարոդով» հանդեսի խմբագրությունում տեղի ունեցած խորհրդակցությունում, որը նվիրված էր ներկա պայմաններում ազգային հարցի քննարկմանը, հանդեսի գլխավոր խմբագիր Ս. Բարուզդինը նշեց, որ շրջանցվում է այն կարևոր հանգամանքը, որ ցարական Ռուսաստանը ժողովուրդների բանտ էր, գաղութային տերություն: Իրենց պատմական զարգացման ընթացքով ժողովուրդների մի մասը Ռուսաստանին միացավ կամավոր, իսկ մյուս մասը՝ հարկադրաբար: Այդ պրոցեսները խիստ բարդ և հակասական բնույթ են կրում, մինչդեռ չեն բացահայտվում, նրանց բոլորի միացումը համահարթվում է: Այլ հարց է, որ մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ մեր երկրում սոցիալիստական հասարակության պայմաններում, նրանք բոլորն էլ շահեցին, վերածնվեցին ու զարգացան խորհրդային ժողովուրդների միասնական ընտանիքում:

Անհրաժեշտ է ճշմարտացի և մեծ ուշադրությամբ, հոգատարությամբ լուսաբանել այն ամենը, ինչ վերաբերում է այս կամ այն ժողովրդի ազգային գիտակցության ձևավորմանը: Գաղութատիրական պետության բազայի վրա ստեղծելով բազմազգ պետություն՝ Լենինն ամեն ինչ անում էր նրանում մարմնավորելու ինտերնացիոնալիզմի գաղափարը, ստեղծելու ազատ ժողովուրդների ֆեդերացիա: Այդ գաղափարը ևս Ստալինն աղավաղեց. նա հռչակեց խորհրդային ազգերի ծաղկման ու մերձեցման այնպիսի պրոցես, որը լի էր բազմաթիվ «բայց»-երով, որոնք փաստորեն աղավաղում և ժխտում էին ազգային հարաբերությունների լենինյան սկզբունքները, շեշտը դնում նրանց ձուլման վրա:

1926 թ. մարդահամարի տվյալներով Խորհրդային Միությունում կային 194 ազգ և ժողովուրդ: ԽՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումում նշվեց, որ մեր երկրում մայրենի լեզվով կրթություն են ստանում 39 ժողովուրդներ: Խորհրդային ժողովուրդների լեզուների կենսունակությունը պայմանավորվում է ազգերի հետագա մերձեցման պայմաններում նրանց հարստացմամբ:

Ազգային կուլտուրաների փոխներթափանցմանը, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը մեծապես նպաստում է ռուսաց լեզուն, որով խոսում է խորհրդային ժողովրդի ճնշող մեծամասնությունը: Սերը դեպի մայրենի լեզուն, որ խորհրդային երկրում օրինաչափ պրոցես է, ոչ մի դեպքում չի կարող խոչընդոտել ռուսաց, ինչպես նաև մյուս լեզուների սովորելուն և օգտագործելուն, այստեղ չկա և չի կարող լինել լեզուների մրցակցություն կամ ռուսաց լեզվի ճնշում մյուս լեզուների վրա: Ընդհակառակը, կոմունիստական շինարարության պրոցեսում լեզուների փոխազդեցությունը և փոխհարստացումը նրանց զարգացման հիմնական միտումն է: Դրա հիմքում ընկած է ինտերնացիոնալիզմի սկզբունքը, որին խորթ է ազգային գերիշխումը, սնապարծությունը: Այդ պրոցեսը զարգանում է լիակատար կամավորության հիման վրա, որին մեծ նշանակություն էր տալիս Լենինը: «Մենք,— գրում էր նա 1914 թ.,— կողմնակից ենք, որպեսզի Ռուսաստանի յուրաքանչյուր բնակիչ հնարավորություն ունենա սովորելու ռուսաց մեծ լեզուն: Մենք չենք ցանկանում միայն մի բան՝ **հարկադրանքի** տարրը» (**ԵԼԺ**, հ. 24, էջ 359): Խորհրդային երկրի նկատմամբ ինտերնացիոնալ հպարտությունը, ռուսաց լեզուն տիրապետելու կամավոր և աճող մղումը ամենևին չի բացառում կամ խոչընդոտում ԽՍՀՄ-ում բնակվող և խորհրդային ժողովուրդ կազմող ամեն մի ազգի ազգային հպարտությունը, նրա սերը մայրենի լեզվի, անցյալի ու ներկայի, ազգային ավանդույթների և հոգևոր հարստության այլ տարրերի նկատմամբ:

Մայրենի լեզուն ժողովրդի ոգին է, նրա անգին հոգևոր հարստությունը, որի լայն գործածությունը կյանքի բոլոր ոլորտներում կենսական խնդիր է: Մինչդեռ անխոհեմ որոշումներով ու գործելակերպով երբեմն արհեստականորեն նեղացվում է հայոց լեզվի գործածության ոլորտը, որ օրենսդրորեն վավերացված է որպես Հայ-

կական ԽՍՀ պետական լեզու: Ամեն մի գրական լեզու, այդ թվում և հայերենը, պահանջում է մշտական հոգատարություն և պետք է հետևողական պայքար մղել նրա գործառական շրջանակները նեղացնելու դեմ: Դեռևս խորհրդային իշխանության առաջին տարիներին, մեր հանրապետության ժողկոմխորհի առաջին նախագահ Ալեքսանդր Մյասնիկյանը եռանդուն գործունեություն ծավալեց հայերենը որպես պետական լեզու հիմնարկ-ձեռնարկություններում արմատավորելու ուղղությամբ:

Ստալինը ազգային հարցում մեծապետական շովինիզմի իր քաղաքականությունը տարածում էր նաև ԽՍՀՄ ժողովուրդների լեզուների նկատմամբ, հաճախ էր խոսում հաղթող և պարտված, մեռնող լեզուների մասին: Ըստ նրա «տեսության» խաչավորման դեպքում լեզուներից մեկը սովորաբար հաղթող է դուրս գալիս, պահպանում է իր քերականական կառուցվածքը, իր բառային հիմնական ֆոնդը և շարունակում հարստանալ իր զարգացման ներքին օրենքներով, իսկ մյուս լեզուն հետզհետե կորցնում է իր որակը և աստիճանաբար մահանում:

Խորհրդայինը, ինտերնացիոնալիստականը բնավ էլ չի նշանակում ապազգային: Մարքսիզմ-լենինիզմին անհամատեղելի են ինչպես կոսմոպոլիտիզմը, այնպես էլ ազգային նիհիլիզմը:

Ն. Կ. Կրուպսկայան **Ինտերնացիոնալ և ազգային մշակույթի մասին** գրքում քննադատելով նրանց, ովքեր հանդես էին գալիս արհեստական կերպով ինտերնացիոնալ մշակույթ ստեղծելու օգտին, ընդունելով, որ տարբեր ազգերի մշակույթը մերձեցնում է մարդկանց, միաժամանակ նշել է, թե արտակարգ միամտություն կլիներ կարծել, որ արհեստականորեն ինչ-որ ինտերնացիոնալ մշակույթ կստեղծվի: Ինտերնացիոնալ մշակույթը կարող է լինել միայն ազգային մշակույթների սինթեզ:

Ամեն մի ազգ, ժողովուրդ, փոքրաքանակ թե մեծաքանակ, իր ավանդն է ներդնում ինտերնացիոնալ մշակույթի մեջ: ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Ազգային ինքնորոշման Լենինի առաջադրած սկզբունքը եղել և մնում է կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության գլխավոր տարրերից մեկը»:

Դժբախտաբար այս սկզբունքը ևս աղավաղվեց ստալինյան ժամանակաշրջանում: Երկար տարիներ ավելի շատ մեջբերումներ էին արվում Վ. Ի. Լենինի աշխատություններից, քան թափանցում նրա մտքերի խորքերը, էության մեջ, իսկ շատ դեպքերում դրանք արհեստականորեն հարմարեցվում էին ստալինյան սխեմաներին, դոգմաներին:

Վերակառուցումը թափանցեց նաև ազգային զգացմունքների ոլորտը: Պատմական անցյալը, ժողովուրդների լավագույն ավանդույթները մոռացության տալը, ազգային պատմության, լեզվի և մշակույթի նկատմամբ անհրաժեշտ ուշադրություն չդարձնելը տասնյակ տարիների ընթացքում դարձել էր կյանքի նորմ: Ազգային արժանապատվության զգացմունքները, որոնք բնավ չեն հակասում ինտերնացիոնալիստականին, այժմ ավելի մեծ տեղ են գտնում խորհրդային մարդկանց հոգևոր աշխարհում: Տեղի է ունենում ազգային ինքնագիտակցության օրինաչափ աճ:

Բազմիցս լինելով Հայաստանում Իլյա Էրենբուրգը նկատել է. «Հայերի հայրենասիրությունը շեշտված է. երբեմն դա կարող է մոլորություն թվալ, բայց ոչ ոք այն չի շփոթի ուրիշի մշակույթը ժխտող ազգության հետ և ոչ ոք այն չի անվանի գավառայնություն: Հայերի մեջ ինտերնացիոնալիզմի գաղափարներին խորթ մարդկանց չհանդիպեցի» (И. Эренбург, «Литературная Армения», 1968, № 2):

Ազգային ինքնագիտակցության արթնացումը անձի ինքնահաստատման դրսևորումներից է, ռեակցիա ազգային քաղաքականության ստալինյան աղավաղումների դեմ: Եթե ազգային հարցում կրքերի բորբոքումն ընդունում է ծայրահեղ անցանկալի քաղաքական բնույթ, ապա այդ հետևանք է ոչ թե մեր հասարակական կյանքի զարգացման նոր միտումների, այլ տարիներ շարունակ կուտակված սխալների ու բացթողումների:

Անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել ազգային և ազգամիջյան պրոբլեմների հետ կապված հարցերը, վերացնել այդ բնագավառում եղած սպիտակ բծերը: Խիստ անհրաժեշտ է ազգամիջյան հարաբերություններում տասնամյակների ընթացքում կուտակված պրոբլեմների նկատմամբ ունենալ տարբերակված մոտեցում: Միատեսակ չեն Լեռնային Ղարաբաղի, Մերձբալթիկայի, Ալմա-Աթայի կամ Ղրիմի թաթարների պրոբլեմները: Հետևաբար նրանք պահանջում են տարբեր լուծում: Անշուշտ ստալինականության և լճացման տարիները հսկայական վնաս են հասցրել ժողովուրդ-



ների բարեկամությանը, որը սոցիալիստական հասարակության զարգացման շարժուն ուժերից է:

Խոսելով ազգային հարաբերությունների ոլորտի բարդ պրոբլեմների, Հայաստանում, Ադրբեջանում և Լեռնային Ղարաբաղում ստեղծված իրավիճակի սուր բնույթի մասին՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում ունեցած իր ելույթում նշեց, որ ստեղծված իրադրության ակունքները թաքնված են պատմական, սոցիալական, տնտեսական, մշակութային, էթնիկական պրոբլեմների բարդ միահյուսման մեջ, անձի պաշտամունքի և լճացման ժամանակաշրջանում տեղ գտած ազգային քաղաքականության խեղաթյուրումների մեջ: Դրանք կուտակվել են աստիճանաբար, տասնամյակների ընթացքում, չստանալով ոչ միայն անհրաժեշտ լուծում, այլև նույնիսկ հրապարակային ճանաչում: Եվ մեր օրերում, վերակառուցման քաղաքականության հռչակման շնորհիվ, դրա հետ օրգանապես կապված դեմոկրատացումն ու հրապարակայնությունը բացահայտեցին այդ պրոբլեմների բարձիթողի վիճակը:

ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում նշվեց, որ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմները շարունակում են գտնվել միութենական մարմինների ուշադրության կենտրոնում, բացվում են ԼՂԻՄ-ի հետ կապերի համակողմանի զարգացման, նրան սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և մշակութային բազմակողմանի օգնություն ցույց տալու լայն հնարավորություններ: Հայաստանում Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը դարձել է համազգային գաղափար, որն այնքան խորն է թափանցել մարդկանց սրտերը, որ անգամ ծանր տարերային աղետը՝ ահավոր երկրաշարժը Հայաստանի հյուսիս-արևմտյան շրջաններում, մոռանալ չտվեց տասնամյակներ շարունակ գոյություն ունեցող հայ ժողովրդի արդարացի՝ Արցախը Խորհրդային Հայաստանին միացնելու մասին պահանջը: Այդ հարցը ամենայն սրությամբ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում դրեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը. «Չպետք է վախենալ ճշմարտությունից,— ասաց նա... Հակառակ ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի ապրիլյան պլենումում ընկ. Ալիևի անհիմն հայտարարությունների, Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզում տասնամյակներ շարունակ ճնշվել են հայ բնակչության ազգային արժանապատվությունը, սոցիալական ու հոգևոր պահանջմունքները: Ոտնահարվել են անգամ այն չնչին իրավունքները, որ ինքնավար մարզին տալիս է սահմանադրությունը: Ազգամիջյան հարաբերություններում բացահայտ, ակնհայտ անարդարությունն էլ հենց հանգեցրել է ռեգիոնում տիրող ներկա ճգնաժամային իրավիճակին»:

Այս բոլորի հաջող իրականացման գործում կարևոր նշանակություն կունենա ազգային հարաբերությունների հարցի կապակցությամբ ԽՄԿԿ Կենտկոմի առաջիկայում գումարվող պլենումը, որը կարևոր ուղենիշ կլինի ազգամիջյան հարաբերությունները լենինյան պահանջների ոգով զարգացնելու գործում:

---

Վերակառուցումը, անկասկած, երևան հանեց մեր մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության շատ թերություններ, որոնցից հատկապես նկատելի են կենսական օրախնդիր պրոբլեմների վախվորած կերպով առաջադրումը, նորի ցուցադրման գործում պատշաճ համոզչականության բացակայությունը, աշխատանքի անբավարար նպատակաուղղվածությունը, նյութի վերլուծության խորության ու կոնստրուկտիվության պակասը՝ բացասական երևույթները քննադատելիս։ Մասնավորապես, «Խորհրդային Հայաստան» թերթի առանձին հրապարակումներում տեղ գտած թերությունների մասին էր խոս[illegible]ժուռնալիստ» ամսագրում հրապարակված «Քանի դեռ լռում է հայկական ռադիոն» հոդվածում։ Դժբախտաբար, հանրապետության նախկին ղեկավարությունը հասարակական կյանքի վերակառուցման ու դեմոկրատացման [illegible]եսում բավարար չէր օգտագործում մասսայական ինֆորմացիայի [illegible]պագանդայի միջոցները։

Ինչպես [illegible]ենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում իր զեկուցման մեջ նշեց Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը, վերջին ժամանակներս մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության մեջ «նկատելի են որոշակի տեղաշարժեր։ Ընդլայնվել է մամուլում, հեռուստատեսությամբ և ռադիոյով քննարկվող պրոբլեմների շրջանակը։ Սակայն ասել, թե մեր ժուռնալիստիկան վերակառուցվել է, առայժմ վաղ է։ ... Կարևոր է լիովին օգտագործել մասսայական ինֆորմացիայի միջոցների, որպես հրապարակայնության հուսալի գործիքի, մեծ հնարավորությունները։ ... Մամուլը պետք է լայնորեն աջակցի... գաղափարաքաղաքական ոլորտի առողջացմանը, հանրապետության սոցիալ-տնտեսական վերելքի ապահովմանը նպատակամղված... կուրսին։ Մի խոսքով, նա պետք է դառնա հանրապետական կուսակցական կազմակերպության հուսալի օգնականը մեր բոլոր ծրագրային խնդիրների իրականացման ճանապարհին» (ՀԿԿ Կենտկոմի պլենումի նյութերը, «Հայաստան» հրատ., 1988, էջ 60—61)։

Մասսայական ինֆորմացիայի միջոցների ջանքերի կոորդինացումը, նրանց համագործակցությունը, անկասկած, կնպաստեն կարևորագույն խնդրի՝ վերակառուցման գաղափարախոսական ապահովման իրականացմանը։

---



# ՆՈՐԻՑ ԿՇԱՌՆԵՆ ՄԵՐ ԳՅՈՒՂԵՐԸ

Ա. ԳՈՄՑՅԱՆ

ԸՆԴԱՄԵՆԸ ՄԻ ՔԱՆԻ ԱՄԻՍ Է ԱՆՑԵԼ մեր երկրում տեղի ունեցած ամենաահեղ արհավիրքից, և մարդիկ դեռևս հոգեկան խռովքի մեջ են։ Անցած տարվա դեկտեմբերի 7-ի երկրաշարժը, որի ուժգնությունը մեր՝ Ղուկասյանի շրջանի տարածքում հասավ մինչև 9,5 բալի, մեծ չափերի ավերածություններ պատճառեց ժողովրդական տնտեսությանը. 25 բնակավայրերից 8-ը լիովին ավերվել են, 7-ը՝ վնասվել 80—90 տոկոսի չափով, մնացածներում ավերածությունները հասնում են մինչև 70 տոկոսի։ Բնակության համար ոչ պիտանի է դարձել 1.657 տուն, անօթևան է մնացել 1.224 ընտանիք։ Միայն շրջկենտրոնը կորցրել է ավելի քան 36 հազար քմ բնակելի տարածություն՝ փաստորեն ողջ բնակֆոնդի 84 տոկոսը։ Հսկայական են սոցիալական ոլորտի մյուս տեղամասերին պատճառած վնասները։ Հարկավոր է վերականգնել 20 դպրոց, 13 ակումբ ու մշակույթի տուն, կենտրոնական հիվանդանոցն ու ինը բուժմանկաբարձական կետ, երկու տասնյակից ավելի առևտրի ու հասարակական սննդի օբյեկտներ, փոստատներ։ Քանդվել են շրջանի ավտոճանապարհների զգալի հատվածներ, կոմունալ տնտեսության շատ օբյեկտներ, խափանվել են կապի, էլեկտրամատակարարման գծեր, ջերմացանցեր։

Մեծապես տուժել են գյուղատնտեսությունն ու արդյունաբերությունը։ Լրիվ ավերվել են կամ խիստ վնասվել այդ ճյուղերի շատ ձեռնարկություններ։ Պետական և բնակչության անձնական օժանդակ տնտեսություններում կոտորվել է մոտ 4,5 հազար գլուխ խոշոր ու մանր եղջերավոր անասուն։ Միայն ագրոարդյունաբերական համալիրին հասած վնասը կազմում է ավելի քան 32 միլիոն ռուբլի։

Աղետից անմիջապես հետո կուսշրջկոմն ու շրջխորհրդի գործկոմը ձեռնամուխ եղան դրա հետևանքների վերացմանը։ Ստեղծվեց այդ աշխատանքները կոորդինացնող շրջանային շտաբ։ Մշակվեց և շրջկոմի բյուրոյում հաստատվեց առաջիկա երկու տարում երկրաշարժի հետևանքների վերացման կոմպլեքսային միջոցառումների պլան։

Անհրաժեշտ էր առաջին հերթին մարդկանց դուրս բերել վթարված բնակավայրերից, անօթևան մնացածներին տեղավորել, ապահովել սննդով, հագուստով։ Այս ամենադժվարին օրերին շրջանային կուսկազմակերպության, խորհրդային ու տնտեսական ակտիվի, աշխատավորների ջանքերի առավելագույն մոբիլիզացումը, եղած միջոցների ու ռեսուրսների օպերատիվ կենտրոնացումը հնարավորություն ընձեռեցին համեմատաբար կարճ ժամկետում՝ մինչև դեկտեմբերի 20—25-ը, հիմնականում լուծելու տուժած բնակչության առաջին անհրաժեշտության կենսաապահովման հետ կապված հարցերը։ Աղետից հետո արդեն երրորդ օրը վերականգնվեց հեռախոսացանցը, կարգավորվեցին կայուն փոստային կապը, ջերմաէլեկտրամատակարարումը։

Մեր առջև ամբողջությամբ ծառացավ սոցիալական բազմաբնույթ խնդիրների լուծումը։ Այն դարձավ մարդկանց մտահոգության հիմնական առարկան։ Մեր ջանքերը բավարար արդյունք տվեցին. ժամանակավորապես հարմարեցված շինություններում գործել սկսեցին 18 դպրոցներ, առևտրի ցանցի 22 կետեր, 18 ամբուլատորիաներ, կենցաղսպասարկման տաղավարներ, կոմպլեքսային սպասարկման շրջիկ կետեր։ Վթարային պայմաններում ոչ մի օր չդադարեց գործելուց կենտրոնական հի-

---

ԳՈՄՑՅԱՆ ԱՐԱՐԱՏ ԴՎԻՆԻ — ՀԿԿ Ղուկասյանի շրջկոմի առաջին քարտուղար, տնտեսագիտության թեկնածու։

տական հասարակական կազմակերպությունները, ստեղծագործական միությունները ու մշակույթի հայտնի գործիչները:

Մարդու հոգեբանության անխաթարության ապահովման առաջնային պայմաններից է բնակարանի, հայրենի օջախի, տվյալ դեպքում՝ թեկուզև ժամանակավոր, այնուհանդերձ, հուսալի օթևանի առկայությունը: Այս առումով ճիշտ կլինի հանրապետությունում ավելի լայն ծավալներով արագացված կերպով կազմակերպել ժամանակավոր տնակների արտադրությունը և, որքան հնարավոր է, արագ կերպով յուրաքանչյուր ընտանիքի ապահովել հուսալի ծածկով:

Ծանր էր առանց այն էլ խստաշունչ պայմաններում ապրող շրջանին բաժին ընկած փորձությունը: Բայց կյանքը կանգ չի առնում, կամաց-կամաց մտնում է բնականոն ընթացքի մեջ: Առաջին ընտանիքները բնակվեցին քարը-քարին չմնացած Ձորաշեն գյուղում: Ճիշտ է, գյուղը նոր-նոր է բարձրանում փլատակներից, բայց արդեն թեկուզև ժամանակավոր կացարաններում տեղավորված այդ ընտանիքները գյուղի վերածնման գործնական հավաստումն են:

Արդեն կանաչել են աղետից հետո առաջին գարնանացանի հերկերը: Գարնան դաշտային աշխատանքները պահանջվող ժամկետներում և որակով անցկացնելու մեջ, տնտեսական նշանակությունից բացի, մեզ համար առավել կարևորություն էր ստանում բարոյական այն նոր լիցքի հաղորդումը ավերված գյուղերի աշխատավորներին, որը կապահովեր աշխատանքային նորմալ ռիթմի վերականգնումը: Մոտեցումն էլ այստեղ մեկն էր՝ գոտեպնդվել և տոկալ, ոչ մի հեկտար հող չթողնել առանց սերմի: Այս նպատակադրումով էլ գործում էին ագրոարդյունաբերական համալիրի, շրջանային մյուս ծառայությունների սկզբնական կուսկազմակերպությունները:

Տեխնիկայի, ռեսուրսների առավելագույն մոբիլիզացման հետ մեկտեղ մարդկային գործոնի մշտական հաշվառումը, գյուղի աշխատավորների հոգեբանության վերափոխման ճիշտ օգտագործումը հնարավորություն տվեցին ոչ միայն խիստ կարճ ժամկետում ավարտել գարնանացանը, այլև օգնության գնալ հարևան Ամասիայի շրջանին: Իսկ արդեն մայիսի 9-ին՝ Մեծ հաղթանակի օրը, նորակառույց, երկհարկանի շքեղ տներում բնակարանամուտ նշեցին Արփենի և Գոգհովիտ գյուղերի առաջին ընտանիքները:

Որպես շրջանի աշխատավորների՝ վերականգնման գործի վճռականության, ապագայի նկատմամբ ունեցած հույսի ու հավատի արտահայտություն, տեղին կհնչի հայ գրականության դասական Վահան Տերյանի խոսքը.

**Որպես Փյունիկ կրակից կելնես, կելնես նոր**
**Գեղեցկությամբ ու փառքով վառ ու լուսավոր:**

---



# ԱՐՑԱԽԸ ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՕՋԱԽ

ԱՐՑԱԽԸ Հայաստան աշխարհի այն հատվածն է, պատմական Հայաստանի նահանգներից մեկը, որ մշտապես նշանակալի դեր է խաղացել երկրի տնտեսական ու մշակութային կյանքում: Արցախի քարն ու քարը, հոգևոր արժեքները հայ ժողովրդի ինքնահաստատման ու առաջընթացի կենսունակ ազդակն են:

Հայ ազատագրական պայքարի օրրաններից է այն, նրա գաղափարախոսության ու քաղաքական կողմնորոշման սկզբնաղբյուրը, ռուսական պետության հետ համագործակցելու ձեռնարկումների ակտիվ ջատագովը: Այդպես էին մտածում Իսրայել Օրին, Շուշիի բնակիչներ եղբայրներ Հովհաննեսն ու Ղուկասը և ուրիշներ, որոնք մեծ ջանքեր գործադրեցին Անդրկովկասը պարսկա-թուրքական բռնակալներից ազատագրելու և Ռուսաստանին միացնելու գործում: Ահա թե ինչու ռուսական շատ զորավարներ, մասնավորապես Ա. Վ. Սուվորովը, որի մայրը արցախցի Հռիփսիմե Մանուկյանն էր, մեծ հետաքրքրություն էին հանդես բերում փոքրիկ լեռնաշխարհի նկատմամբ:

Պոետների, գիտության մարդկանց, ականավոր մտածողների ծննդավայր է Արցախը, և տարբեր առիթներով նրանք իրենց հիացմունքն են արտահայտել հարազատ լեռնաշխարհի ժողովրդի բարոյական արժանիքների մասին: Հայրենի երկրի այդ գողտրիկ անկյունը աշխարհին է ներկայանում նաև իբրև հոգևոր մշակույթի գանձերի օրրան: Եվ երբ մի հայացք ենք ձգում նրա այդ արժեքների վրա, ապա մեր աչքերի առջև հառնում է նրա հարուստ հոգևոր կյանքը հավաստող համայնապատկերը:

Մեկ հոդվածի շրջանակներում անհնար է ամփոփել Արցախի հազարամյա մշակույթի ամբողջ հարստությունը: Մենք կանդրադառնանք միայն կրթալուսավորական և հրատարակչական կյանքի մի քանի նշանակալի դրվագների:

Այստեղ կրթական գործը սկզբնավորվել է դեռևս հայ դպրության արշալույսին: Ամարասի (IV դարի սկիզբ), Գտչի, Խութա կամ Դադիի (VI դար), Գանձասարի (XIII դարի սկիզբ) վանական համալիրները ոչ միայն հայ ճարտարապետության գլուխգործոցներ են, այլև ժամանակին եղել են կրթության ու մշակույթի կարևոր կենտրոններ:

Դպրոցական և հրատարակչական գործը Արցախում սկիզբ է առել ավելի վաղ, քան Անդրկովկասյան մեծ քաղաքներում (Բաքվում, Երևանում և այլուր): Հայտնի է, որ Մեսրոպ Մաշտոցը V դարում Ամարասում հիմնել է Հայոց աշխարհի առաջին դպրոցներից մեկը, որը թեև գործել է որոշ ընդհատումներով, սակայն էական ավանդ է ներդրել տեղի հոգևոր մշակույթի զարգացման մեջ: Հետագայում, արդեն նոր ժամանակներում, Բաղդասար Հասան Ջալալյանի ջանքերով Արցախի բոլոր վանքերին կից հիմնվում են դպրոցներ: Նա բացում է նաև եռլեզվյան (հայերեն, ռուսերեն և թաթարերեն) ուսումնարան, որի մասին վկայել է մշակութային խոշոր գործիչ Սարգիս Ջալալյանցը:

Ամբողջությամբ վերցրած չի կարելի ժխտել այդ դպրոցների դերը. դրանք լուսավորության տարածման ճանապարհին կայծեր էին, որոնցից ջերմություն էին ստանում դպրոցահասակ երեխաները:

Հասան Ջալալյանի անվան հետ է կապված մշակութային նաև այլ խոշոր ձեռնարկումների իրականացումը: Նա բավականին մեծ գումար է ուղարկում Վենետիկի Մխիթարյանների միաբանությանը, բերել տալիս մեկական օրինակ նրանց բոլոր հրատարակություններից և կազմում հոգևոր դպրոցին կից մի հարուստ գրադարան, այնտեղ հավաքելով Արցախի վանքերում գտնված նշանավոր գրչագիր մատյանները: Ինչպես վկայում է Րաֆֆին, այդ գրքերը հետզհետե տպագրելու մտադրություն ուներ իր սեփական տպարանում: Հասան Ջալալյանի և ժամանակի այլ գործիչների եռանդուն ջանքերով 1838 թվականի հունիսի 22-ին Շուշիում բացվում է Ղարաբաղի հայոց թեմական դպրոցը, որը գոյատևում է մինչև 1920 թվականը: Այս դպրոցում տարբեր տարիների դասավանդել են Պերճ Պռոշյանը, Ղազարոս Աղայանը, Վրթանես Փափազյանը, Պետրոս Շանշյանը, հայ մշակույթի ուրիշ երախտավորներ: Դպրոցի անցած ուղու մասին ծավալուն աշխատություն է գրել ականավոր պատմաբան Լեոն:

Ղարաբաղի հայոց հոգևոր դպրոցից զատ բացվում են օրիորդաց և տղաների առանձին ուսումնարաններ: Հայտնի են Շուշիում Գարեգին Մուրադյանի և այլոց կազմակերպած մաս-

նավոր դպրոցները, որոնց նպատակն էր տարրական կրթություն տալ հայ պատանիներին ու աղջիկներին: Արցախցի կանայք մեծ ջանքեր էին գործադրում աղջիկ երեխաների կրթության գործը կազմակերպելու համար: Այս առումով ուշագրավ էր շուշեցի Մարիամ Հախումյանի ավանդը: Նրա կազմած ծրագրով ու գործադրած եռանդի շնորհիվ 1864 թ. ապրիլի 7-ին Շուշիում բացվում է օրիորդաց դպրոց: Ժամանակի մամուլը ջերմությամբ է արձագանքել այդ նախաձեռնությանը: Հետագայում Շուշիում արգասաբեր են գործում ոչ միայն Մարիամյան, այլև Ղուկասյան, ռեալական և այլ դպրոցներ:

Արցախը հայտնի էր նաև իր թատերական կյանքով: Դեռևս անցյալ դարի սկզբներին հայաբնակ շատ վայրերում ստեղծվում են թատերական խմբեր, որոնք միացյալ ուժերով տալիս էին բեմադրություններ և համերգներ: Գավառում մշտական գործող թատրոն ստեղծելու միտքը ծագում է 1865 թվականի այն օրերին, երբ Շուշի են գալիս հայ թատրոնի ռահվիրաներ Գևորգ Չմշկյանն ու Միհրդատ Ամերիկյանը: Նրանք Շուշիի ակումբում բեմադրում են Հեքիմյանի «Սամվել» ողբերգությունը, «Վարդան Մամիկոնյան» պիեսը և այլ գործեր: Մամուլը հիացմունքով է խոսում ոչ միայն բեմադրությունների, դերասանների խաղի, այլև արցախցիների՝ թատրոնի հանդեպ ունեցած անհագուրդ սիրո մասին: Շուշին դարձել էր հայության հոգևոր կյանքի կենտրոններից մեկը, որտեղ ամառային ամիսներին հանդես էր գալիս Պետրոս Ադամյանը: Թատերական արվեստի նկատմամբ մեծ սեր առաջացնելու մղումով նա ներգրավում էր նաև Շուշիի հայոց թեմական և մյուս դպրոցների բարձր դասարանների աշակերտներին: Մամուլի վկայությամբ, Պետրոս Ադամյանը և Սիրանույշը խաղացել են «Համլետում» և այլ դասական պիեսներում: Բացի այս, թատերական կյանքի աշխուժացմանը մեծապես նպաստել են Սաֆրազյան ամուսինները: Նրանք սիրող դերասանների հետ բեմադրել են «Սամվելը», «Շուշանիկը», «Երվանդ կամ Սանդուխտ կույսը» և այլ պիեսներ: Տեղի թատերական արվեստի զարգացմանն աջակցում էր նաև Կովկասի բարեգործական ընկերությունը, որը նախաձեռնում էր բեմադրություններ և դրամական նպաստ բերում դրանց իրականացմանը:

Արցախում թատերարվեստը նոր թափ է ձեռք բերում 1891 թվականին Շուշիում Մկրտիչ Խանդամիրյանի թատրոնի հիմնադրմամբ: Մ. Խանդամիրյանը ծնունդով Ղափանի Շահկերտ գյուղից էր: Թատերական գիտելիքներ էր ստացել Փարիզում և համաշխարհային մշակույթի այլ առաջնակարգ կենտրոններում, շփվել մեծանուն արվեստագետների հետ: Հաստատվելով Շուշիում, Մ. Խանդամիրյանը ամբողջովին նվիրվում է թատրոնին: Նրա միջոցներով քաղաքում շուտով վեր է խոյանում եռահարկ մի շենք, որտեղ սկիզբ են առնում մշակութային տարբեր ձեռնարկումներ: Բեմադրություններից բացի, այստեղ անցկացնում են երեկույթներ, ցերեկույթներ, կրկեսային ներկայացումներ:

Խանդամիրյանի թատրոնը շատ շուտով հայտնի է դառնում ամբողջ Կովկասում և նրա սահմաններից դուրս: Տարբեր դերասանական խմբեր ցանկանում են լինել Արցախում և հանդես գալ այդ պատվավոր բեմում: Ըստ «Տարազ» ամսագրի տվյալների, յուրաքանչյուր ամառ Խանդամիրյանի թատրոնում բեմադրվում էր առնվազն 12—13 պիես: Շուշի էին գալիս հայ դերասաններ, հատկապես Բաքվից և Թիֆլիսից, նրանց թվում՝ Գրիգոր Ավետյանը, Գևորգ Պետրոսյանը, տիկին Զաբելը, Մարի-Հրանուշը, օր. Վարդիթերը: Արցախում հյուրընկալվել է հայ մեծանուն դերասան Հովհաննես Աբելյանը, իր խմբով ներկայացումներ տվել ոչ միայն գավառի կենտրոնում, այլև գյուղերում:

Այս և այլ հանգամանքներ նպաստում են Արցախի մի շարք գյուղերում որոշակիորեն աշխուժացնելու թատերական կյանքը: «Մշակը» 1897 թ. սեպտեմբերի 11-ի համարում տպագրել է իր թղթակցի նամակը Փրշամալ գյուղից, որտեղ ասվում է. «Ահա երկու տարի է, որ մեր գյուղացիները բախտ են ունենում մի խումբ թատերասերների շնորհիվ երեկույթներ ունենալու: Այս տարի էլ, ինչպես և անցյալ տարի, մի երեկույթ տեղի ունեցավ, բաղկացած երգերից և ներկայացումից: Ներկայացրին «Կըռը-կըռը» և «Մըկնի հարսանիք» վոդևիլները: Որքան ուրախալի էր տեսնել, որ գյուղացիները ամեն կերպ աշխատում էին ներկա լինել երեկույթին, այնինչ առաջները թատրոնից խորշում էին»:

Շուշիում և գավառի առանձին գյուղերում կազմակերպվում էին թատերականացված երեկոներ, որոնց մի բաժինը համերգ էր, մյուսը՝ կարճ բեմադրություն: Բնակչությունը ջերմորեն է ընդունում նշանավոր երաժշտագետ Կարա-Մուրզայի 100 հոգուց բաղկացած անսամբլի, թեմական դպրոցի երգեցողության ուսուցիչ Ստեփան Դեմուրյանի ղեկավարած քառաձայն երգեցիկ խմբի ելույթները:

Ուշագրավ էին դպրոցականների ուժերով կազմակերպվող այն միջոցառումները, որոնք անվանվում էին «Գրական-գեղարվեստական առավոտ»: Այստեղ էլ առաջին բաժնում կատարվում էին բնակչության կողմից սիրված երգեր և ներկայացնում զողտրիկ պիեսներ, մեծ մասամբ՝ վոդևիլներ:

Հետզհետե գավառի աշխատավորությունը նոր պահանջներ է ներկայացնում և՛ թատրոնին, և՛ ընդհանրապես, գեղարվեստական միջոցառումներին: Թատերասեր հասարակայնությունը գտնում է, որ թատրոնները պետք է դարձնել ժողովրդական, այսինքն բեմադրել այնպիսի պիեսներ, որոնք ուղղակիորեն ներկայացնեն աշխատավորության հոգսերն ու ակնկալիքները: Մամուլի էջերում հրապարակված մի շարք նամակներում մարդիկ գրում են, որ թատրոնն էլ իր բարոյական ուժը ստանա ժողովրդից և ազնվորեն ծառայի նրան: Ավելին, թատրոնը կենսական պահանջմունք է բոլոր մարդկանց համար:

Մշակութային կյանքի նկատելի աշխուժացման հզոր խթան էին նախախորհրդային Շուշիում գործող ոչ միայն հայկական դպրոցները, պրոֆեսիոնալ թատրոնն ու սիրողական խմբերը, այլև տպագրական գործի սկզբնավորումը: 1827 թվականին Շուշիում ստեղծվում է տպարան, որը սկիզբ է դնում Արցախում հայերեն գրքերի, թերթերի, ամսագրերի, հանդեսների հրատարակմանը: Քաղաքում կառուցված երկհարկանի շենքի մի մասը ծառայում էր դպրոցին, մյուս մասը՝ տպարանին: Այս գործում անուրանալի դեր են կատարել Միրզա Հարություն Ֆարուխը, Բարսեղ և Մովսես սարկավագները, Պողոս լեզվաբանը:

Շուշիում լույս տեսած առաջին գրքին՝ «Պատմություն սուրբ գրոց» հետևում են մեծ մասամբ ուսումնական և գիտական աշխատություններ, ինչպես «Համառոտություն հայկական քերականության» (1829 թ.), «Համառոտ բառգիրք ի գրաբառէ աշխարհաբառ» (1830) և այլն:

Արցախում տպագրական գործի ջատագով էր արդեն հիշատակված Բաղդասար Հասան Ջալալյանը, որը մեծ ջանքեր է գործադրել հայագիտությանը նվիրված գրքեր հրատարակելու համար: 1833 թվականին նրա նախաձեռնությամբ լույս է տեսնում Միքայել Չամչյանի «Քերականություն հայկազյան լեզվի» աշխատությունը:

Հայտնի է, որ 1837 թվականին հրատարակվել է անգլիացի մեծ բանաստեղծ Ջ. Բայրոնի «Շիլիոնի կալանավորը», որի թարգմանությունը հաջողությամբ կատարել էր հմուտ գրականագետ և թարգմանիչ Մովսես Ջոհրաբյանը: Եվ, այսպես, տարին 3—4 գիրք է լույս տեսնում Շուշիում: Ճշտված տվյալներով 1828—1840 թթ. Արցախում հրատարակվել է շուրջ 35 անուն գիրք, որոնց դերը չի կարելի ժխտել՝ մի կողմից արևելահայ լեզվի հղկման, մյուս կողմից՝ գրական լեզուն ավելի մատչելի ու հասկանալի դարձնելու հարցում:

Տպագրական գործը մի նոր աստիճանի է հասնում, երբ 1881 թ. Շուշիում հիմնվում է Միրզաջան Մահտեսի-Հակոբյանի տպարանը, որտեղ իր գրական մկրտությունն է ստացել ականավոր պատմաբան Լեոն՝ լինելով տպարանի առաջին սրբագրիչը:

Իր հրատարակչական գործունեությունը Շուշիում է սկսել Տիգրան Նազարյանը՝ լույս ընծայելով Հ. Սենկևիչի «Պոզնանի ուսուցչի օրագրից» պատմվածքը, Նիկողայոս Տեր-Ավետիքյանի «Քնար խոսնակ» գրական պարբերականը: Այստեղ է առաջին անգամ տպագրվել Րաֆֆու «Խենթը»: Կարևոր իրադարձություն էր նաև 1886 թվականին Գոգոլի «Տարաս Բուլբայի» հայերեն տպագրությունը Մ. Մահտեսի-Հակոբյանի տպարանում: Տպարանը աչքի էր ընկնում իր պոլիգրաֆիական արվեստով: Ահա թե ինչու Րաֆֆին հատկապես ձգտում էր իր անդրանիկ երկերը ընթերցողներին հասցնել Շուշիի տպագրությամբ:

Արցախի մշակութային կյանքում պատկառելի էր հայ պարբերական մամուլի դերը: 1874 թվականից մինչև խորհրդային իշխանության հաղթանակը, երկրամասում լույս են տեսել 21 անուն թերթ ու հանդես, որոնցից 19-ը՝ հայերեն, 2-ը՝ ռուսերեն: Առաջնեկը «Հայկական աշխարհն» էր, որի անդրանիկ համարը լույս է տեսել 1874 թվականի ապրիլին: Հրատարակիչ-խմբագիրը՝ Խորեն Ստեփանեն, ավարտել էր Պետերբուրգի համալսարանը և, վերադառնալով հայրենի Շուշի, մշակութային գործունեություն ծավալել: Նա ձգտում էր իր պարբերականի միջոցով գավառում զարգացնել կուլտուր-լուսավորական գործը, նաև՝ բարեփոխություններ մտցնել հայկական ուղղագրության մեջ: Եվ պետք է ասել, որ այդ ասպարեզում որոշակի հաջողությունների հասավ: Արցախում հրատարակված պարբերականներից կարելի է հիշատակել «Գործ», «Միաբան», «Ազգագրական հանդես» ամսագրերը, «Ղարաբաղ», «Փայլակ», «Նեցուկ», «Նոր կյանք» թերթերը:

1880-ական թվականներից սկսած Արցախում լույս են տեսնում զուտ գրական-գեղարվեստական հանդեսներ: Այդպիսի պարբերականներից էր գրական շրջաններում հայտնի խմբագիր-հրատարակիչ Ն. Տեր-Ավետիքյանի «Քնար խոսնակը» (1881): Ինքնատիպ այդ հանդեսի մեջ զետեղվում էին ոչ միայն ինքնուրույն գործեր, այլև թարգմանություններ Պուշկինից, Լերմոնտովից, Հայնեից, Գյոթեից, Շիլլերից, Բայրոնից և այլ հայտնի հեղինակներից: «Քնար խոսնակում» Ն. Տեր-Ավետիքյանը զետեղեց Պուշկինի «Հուշարձանը», որտեղ նա բարձր էր գնահատում բանաստեղծի ստեղծագործությունները՝ դրանք համարելով բացառիկ քանքարի և շռայլ տաղանդի արտահայտություններ:

Ն. Տեր-Ավետիքյանը ոչ միայն դրվատում է առանձին անձնավորությունների, այլև փորձում է գեղարվեստական խոսքի ուժով արտահայտել աշխատավորների ցանկությունները, մարմնավորել նրանց մտքերն ու խոհերը: Հեղինակը հրապարակ է հանում ժողովրդի ներաշխարհը, ցույց տալիս նրա սոցիալական վիճակը և քաղաքական տրամադրությունները, քննադատական խոսք ասում նրանց հասցեին, ովքեր գոփում են խեղճ գյուղացու արդար վաստակը: Դա հատկապես արտահայտվում է նրա «Հյուսիսի աշունը» և «Հյուսիսի ձմեռը» բանաստեղծություններում:

Հայ աշխատավորի ողբերգական վիճակն արտացոլվել է Ն. Տեր-Ավետիքյանի «Սով» արձակ բանաստեղծության մեջ: Նա ցավով է հրա-

պարտակում այն փաստը, որ կյանքի անտանելի պայմաններից դրդված հայ գյուղացին կաշկանդված է մահվան ճիրաններում և ստիպված է ամեն մի դժվարություն տանել, ստորանալ, մի կերպ քարշ տալ ֆիզիկական գոյությունը: Բայց հեղինակը չի բավարարվում մարդու ցավագին վիճակն արտահայտելով, որոշ չափով ներկայացնում է լայն զանգվածների դժգոհությունը ցարիզմի նկատմամբ:

Գաղափարական որոշ նպատակասլացություն ունեին Ն. Տեր-Ավետիքյանի չափածո գործերը: Հիմնականը հայրենիքի շենացումն է, ժողովրդի համար ուրախալի կյանքի ստեղծումը: Այդպիսի միտում ունի «Հասարակություն» բանաստեղծությունը: Այն մի կողմից ներկայացնում է հայրենանվեր գործի հասարակական նշանակությունը, մյուս կողմից՝ արտահայտում Հայաստանի բարգավաճման փափագը: Հեղինակը, սակայն, ծաղրում է նրանց, ովքեր «հայրենիք» հորջորջելով՝ իրենց դնում են անձնազոհի, հայրենասերի պատվանդանին: Այդպիսիներին չի ուզում նկատել բանաստեղծը: Հեղինակը լավի, բարու գաղափարն է զարգացնում «Գարուն», «Վիթխարի բարեբար», «Պաշտոնապես» և այլ ստեղծագործություններում:

1882—1884 թվականներին Շուշիում լույս էր տեսնում Սիմոն Հախումյանի «Գործ» հանդեսը: Նրա էջերում զետեղվում էին ոչ միայն ինքնուրույն և թարգմանական ստեղծագործություններ, այլև գրականագիտական հոդվածներ, որոնք այսօր էլ կարող են հետաքրքրել շատերին: Ս. Հախումյանը խնդիր էր դնում մոտիկից ուսումնասիրել նաև մյուս ժողովուրդների կյանքը և հատկապես Ռուսաստանի իրավիճակը: Հանդեսի 3-րդ համարում նա գրում է. «Ռուսաստանի կյանքը շատ սերտ կապ և հարաբերություն ունի մերինի հետ, բայց այդ երկրի հասարակական կազմակերպությունը, ներքին կյանքը մեզ համար անհայտ երկիր է»: Դրա պատճառներից մեկը նա համարում էր ժամանակի մամուլի, առանձին հրապարակումների անբարյացակամ վերաբերմունքը:

Մոտիկ շփում ունենալով ռուս ժողովրդի մշակույթի հետ, ընդգծում էր Ս. Հախումյանը, վիթխարի քայլերով առաջ կգնա նաև հայ արվեստը, գրականությունը: Ցավն այն է, սակայն, բողոքում էր նա, որ հայ ընթերցողը շատ քիչ է ծանոթ ռուս գրականությանը: Այնպիսի մեծանուն ստեղծագործողներ, ինչպիսիք են Գոգոլը, Տուրգենևը, Տոլստոյը, Դոստոևսկին, Սալտիկով-Շչեդրինը և ուրիշներ, ինչպես նաև եվրոպական շատ առաջնակարգ գրողներ, հիմնականում թարգմանված չեն, չեն դարձել հայ ընթերցողների սեփականությունը:

«Գործի» խմբագիրը կողմնակից չէր եվրոպական քաղաքակրթությունը կուրորեն ընդունելուն, այլ պահանջում էր քննադատական մոտեցում ցուցաբերել. «Մենք գտնում ենք, որ եվրոպական լուսավորությանը կուրորեն հետևելը և նրան կուրորեն ընդունելը՝ չի կարող ազգին մի մեծ բարիք լինել,— կարդում ենք հանդեսում:— Համաձայն և ջերմ ջատագով ենք այն մտքին, թե մեր ժողովուրդը պետք է օգուտ քաղե եվրոպական մտավոր և հոգեկան անհագին ժառանգությունից, բայց այդ ժառանգությունն ընդունելիս՝ պետք է միշտ քննել, թե եվրոպական կուլտուրայի մեջ ինչ բան ճշմարիտ ընդհանուր մարդկային է, ինչ բան պտղաբեր է, ինչ բան կարևոր է մեր հայրենիքի զարգացման և բեղմնավորության համար և ինչ բան նրա մեջ մասնավոր է, անցողական, մինչև անգամ՝ կեղծ և վնասակար» («Գործ», 1884 թ., էջ 4—5):

Ս. Հախումյանը գրեթե նույն կարծիքին էր ռուս գրականության մասին: Ռուս գրողների բոլոր գործերը նա հալած յուղի տեղ չէր ընդունում և բարձր էր գնահատում այն ստեղծագործությունները, որոնք իրականությունն արտացոլում են ռեալիստորեն, ճշմարտացի՝ ներկայացնելով կյանքը իր ողջ բազմազանությամբ, հերոսներին՝ լիարժեք, բնութագրական, բնորոշ տվյալ ժամանակի համար: Եվ միտքն ամփոփում է այսպես. «Մենք պետք է ծանոթանանք ռուս գրականության այն արտադրությանց հետ, որոնք թեև նկարագրում են ռուսաց կյանքը իր բոլոր գեղեցիկ և հոռի, մխիթարական և անմխիթար կողմերով, բայց որոնց մեջ միևնույն ժամանակ երևում են համամարդկային գծեր, որոնք համահավասար կերպով սիրելի են բոլոր մտածող և ամեն ազգի լավագույն մարդկանց համար: Այս տեսակետից են, օրինակ, Տուրգենևի, Տոլստոյի գրվածքները, և հենց դրա համար է, որ ամբողջ Եվրոպան այնքան սիրում էր Տուրգենևին, թեև նա նկարագրում էր ըստ մեծի մասին ռուս տիպեր...» («Գործ» 1884 թ., էջ 5—6):

«Գործի» տնօրենը զարգացնում էր այն միտքը, որ գեղարվեստական ստեղծագործություններից բացի, հատկապես գրական մամուլում, պետք է լայն տեղ հատկացվի գրախոսություններին: Սակայն վերջիններս էլ չպետք է միայն համառոտակի ներկայացնեն այս կամ այն գործի սյուժեն կամ բովանդակությունը, թռուցիկ խոսեն նրա արժանիքների, լեզվաոճական առանձնահատկությունների մասին, այլ արծարծեն գրականագիտական մտքեր, առաջ քաշեն նոր հարցեր, շեշտեն գրականության զարգացմանը նպաստող հանգամանքները:

Գրականագիտական, լեզվաբանական որոշակի հարցերի էր անդրադառնում հայտնի ազգագրագետ, բանասեր Երվանդ Լալայանի «Ազգագրական հանդեսը», որի առաջին համարը լույս է տեսել 1896 թվականին Շուշիում: Հրատարակիչը նպատակ ուներ այդ պարբերականը դարձնել այնպիսին, որ նրա էջերից նյութեր քաղեն գրողն ու գիտնականը, ազգագրագետն ու հնագետը, բոլորը, ովքեր հետաքրքրվում են հայ ժողովրդի մշակույթով, ավանդություններով, կենցաղով:

Մեզ հայտնի չէ որևէ պարբերականի անուն, որ դարավերջից մինչև 1911 թվականը հրատարակված լինի Արցախում: Մամուլի հմուտ գիտակ Գարեգին Լևոնյանը մի առիթով նկատել է, որ նշված տարիները հայ մամուլի համար տխուր շրջան էին: Տպագրական գործի խափանման հիմնական պատճառը, իհարկե, քաղաքական իրավիճակն էր, ցարական գրաքննության դաժանությունը: Ցարիզմն ամեն կերպ ձգտում էր փականքի տակ դնել լուսավոր միտքը, թույլ չտալ հրատարակել մասսայական գրականություն, թերթեր, ամսագրեր, հանդես, որտեղ կարող են թափանցել հակակառավարական կոչեր ու հեղափոխական գաղափարներ:

Առաջին թերթը, որ դարասկզբին լույս է տեսնում Արցախում «Ղարաբաղն» էր: Այն հիմնականում խմբագրում էր գրող Վրթանես Փափազյանը: Պարբերականը սկսեց հրատարակվել 1911 թվականից և նրա առաջին չորս համարներում «Գրական ակնարկներ» խորագրով տպագրվեց Վ. Փափազյանի ծավալուն հոդվածաշարը՝ արվեստագետի, նրա աշխարհայացքի, բանաստեղծական արժանիքների մասին: «Գրական ակնարկների» մեջ հեղինակն իբրև տաղանդաշատ գրողի և մեծ արվեստագետի առաջին հերթին անդրադառնում է Ավետիք Իսահակյանի ստեղծագործություններին, մասնավորապես, հռչակավոր «Աբու Լալա-Մահարի» պոեմին: «Իսահակյանը ռուսահայ գրականության այն երիտասարդ տաղանդներից է,— գրում է Վ. Փափազյանը,— որ վառ երազներով լի մտել է կյանքի մեջ որպես մի թիթեռ՝ սիրելու համար ծաղիկ ու աղջիկ, երգելու համար ծաղկի բուրմունք, կույսի սեր, մրմունջ-տրտունջ և տանջվող սրտի երգեր ու վերքեր...» («Ղարաբաղ», 1911 թ. նոյեմբերի 20): Հեղինակը զարգացնում է այն միտքը, որ գրողը պետք է կապված լինի իր ժողովրդին, արտացոլի նրա առօրյան, մարմնավորի ժամանակի բնութագրական կողմերը:

Հայ պարբերականի էջերում լայն տեղ է տրվում Լևոն Աթաբեկյանի, Գրիգոր Ներսիսյանի, Խորեն Բորյանի և ուրիշների այն ստեղծագործություններին, որոնց մեջ գովերգվում են արդար աշխատանքի տեր մարդիկ, արտահայտվում նրանց իղձերն ու ցանկությունները:

Իր մի շարք բանաստեղծություններում հատկապես Գրիգոր Ներսիսյանը վառ գույներով է մարմնավորում հայրենիքի սերը, նրա բնությունը, հարազատ շրջապատը: Հեղինակը տեսնում է, որ ռեակցիայի տարիներից հետո հեղափոխության գործը արագորեն առաջ է ընթանում, բոլշևիկները մասսաների գլուխն անցած, պատրաստվում են վճռական գրոհի: Այդ միտքը մարտականորեն է հնչում «Նոր այգ» բանաստեղծության մեջ:

Գրական ստեղծագործություններին մեծ տեղ էր տրվում Շուշիում 1915—1917 թվականներին լույս տեսնող «Փայլակ» թերթում: Իրենց չափածո և արձակ գործերով աչքի են ընկնում Գրիգոր Ներսիսյանը, Գառնիկ Ղազարյանը, Լևոն Վարդունին և ուրիշներ: Հիմնական թեման էր հայրենի եզերքի, աշխատավոր մարդու հոգսերը: Ուշագրավ է Լ. Վարդունու «Դու մի վհատվիր» բանաստեղծությունը, որը տպագրվել է թերթի 1917 թ. հունվարի 1-ի համարում: Նշանակալից է «Ծիածան» գրական-գեղարվեստական պարբերականի դերը, որը լույս է տեսել 1916 թվականին Շուշիում: Նրա էջերում հանդես էին գալիս Գառնիկ Ղազարյանը, Ավագ Կոծանյանը, Խորեն Լոռենցը, Միսակ Պետրոսյանը և ուրիշներ, որոնք գովերգում էին գալիքը, տենչում ազատություն և արդարություն:

Արցախը երկար տարիներ ապրել է մշակութային արգասաբեր կյանքով ոչ միայն նախախորհրդային տարիներին, այլև խորհրդային կարգեր հաստատվելուց հետո էլ: Սակայն ստալինյան անհատի պաշտամունքի և բրեժնևյան լճացման տարիներին կտրուկ սահմանափակվեցին Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում մշակույթի զարգացման հնարավորությունները: Անմխիթար վիճակում էին արվեստը, գրականությունը, թատրոնը, կուլտուր-լուսավորական օջախների գործունեությունը: Մարզի կուսակցական և մյուս կազմակերպությունների ղեկավարների մեղքով երկար տարիներ արցախցիների շատ նախաձեռնություններ մնացին կես ճանապարհին: Մարզը մեկուսացված էր մայր հայրենիքից, նրա հետ շփվելու հնարավորությունից: Բանը հասել էր այնտեղ, որ արցախցի հայ մարդն իրավունք չուներ դիտելու Հայկական ԽՍՀ հեռուստատեսության ծրագրերը կամ դպրոցներում անցնելու հայ ժողովրդի պատմությունը:

1988 թ. դեկտեմբերին Մ. Ս. Գորբաչովը Կենտրոնական հեռուստատեսության և Հայաստանի հեռուստատեսության թղթակիցների հետ ունեցած հարցազրույցում ուղղակի նշեց. «Ես կարծում եմ, որ Ղարաբաղի պրոբլեմը որպես այդպիսին կա, նա արմատներ ունի, և նա սրվեց այն պատճառով, որ նրա բնակչության նկատմամբ ինչ-որ փուլում ադրբեջանական նախկին ղեկավարությունը վերաբերվել էր սխալ, ոչ լենինյան ավանդույթների ոգով, իսկ երբեմն էլ պարզապես ոչ մարդկայնորեն: Եվ դա վիրավորել էր մարդկանց: Սա մենք դատապարտում ենք. հենց դրա համար էլ մենք օգնության եկանք, որոշում ընդունեցինք, որ օգնենք սոցիալ-տնտեսական զարգացմանը... որպեսզի վերացվեն մարդկանց բոլոր պրոբլեմները, կենսապայմաններ ստեղծեն, լուծեն մշակույթի, մայրենի լեզվի զարգացման, դասավանդման հարցերը, նորմալ կապեր հաստատվեն Հայաստանի հետ»:

Արցախի սոցիալ-տնտեսական և մշակութա-

յին, կրթության և գիտության հարցերին անդրադարձավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում: Նա շեշտեց, որ այսուհետև լայն հնարավորություններ են ստեղծվում Արցախը մայր հայրենիքի հետ բոլոր ճյուղերով կապելու համար:

Հայաստանի հետ մշակութային, լեզվի, կրթության, արվեստի և այլ գծով Արցախի հայ բնակչության կապերի ամրապնդման նպատակով ստեղծվել են ինքնավար մարզի ստեղծագործական կազմակերպություններ՝ գրողների, կոմպոզիտորների, նկարիչների, լրագրողների միություններ, որոնք ուղղակի ենթարկվում են երկրի ստեղծագործական միություններին: Արդեն ստեղծված է գրահրատարակչական միավորում, լուծված է «Արցախ» գրական-գեղարվեստական և հասարակական ամսագիր լույս ընծայելու հարցը: Անցյալ տարվանից արցախցիները հնարավորություն ունեն դիտելու Հայկական ԽՍՀ հեռուստատեսության ամենօրյա ծրագիրը: Գործում է նաև տեղական հեռուստատեսությունը:

Օրեցօր աշխուժանում են մշակութային կապերը Հայկական ԽՍՀ-ի հետ: Դրա վկան էր նաև վերջերս մարզի գրողների, արտիստների, նկարիչների, ճարտարապետների, ստեղծագործական մտավորականության այլ ներկայացուցիչների հանդիպումը ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանի, կուլտուրայի մինիստրության, ստեղծագործական միությունների ղեկավարների հետ, որի նպատակն էր մարզի մշակութային կյանքը նորմալ հունի մեջ դնելու համար կոնկրետ ծրագիր մշակելը:

Հանրապետության կառավարությունը որոշում է ընդունել կազմակերպել կոմպլեքսային հնագիտական վերականգնիչ արշավախումբ, որի նպատակն է, վերականգնել պատմության և մշակույթի հուշարձանները: Այդ կարևոր գործի համար առանձնացվել է 200 հազար ռուբլի: Նախատեսված է այս տարի այդ միջոցների մի զգալի մասը ծախսել Ամարասի վանական համալիրի վերականգնմանը:

«Մոսկոնցերտի» և համամիութենական այլ կազմակերպությունների հետ պայմանավորվածություն է ձեռք բերվել Արցախում գեղարվեստական երեկոներ, հանդիպումներ, համերգներ, բեմադրություններ տալու համար: Լուրջ քայլեր են արվում մարզի կուլտուր-կրթական գործը կարգավորելու ուղղությամբ: Նախատեսված է մոտ ժամանակներս սկսել մշակույթի և պիոներների պալատների կառուցման, ակումբների շատ շենքերի հիմնական վերանորոգման, դպրոցները սարքավորումներով զինելու, գույքը փոխելու աշխատանքները: Իսկ մինչ այդ, Ստեփանակերտում գտնվող քաղաքական լուսավորության տան հիանալի շենքը հանձնվում է երեխաներին՝ որպես պիոներների և դպրոցականների պալատ:

Պետք է հուսալ, որ արցախցիների համար կստեղծվեն անհրաժեշտ պայմաններ հայրենի մշակույթը, արվեստը, գրականությունը, թատրոնը, հրատարակչական-տպագրական գործը զարգացնելու համար: Այս գործում, ինչ խոսք, հսկայական անելիքներ ունեն մեր հանրապետության մշակութային հիմնարկներն ու համապատասխան կազմակերպությունները:

Վերջերս Մոսկվայում տեղի ունեցած ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում շեշտվեց, որ ԼՂԻՄ-ի հատուկ կառավարման կոմիտեի ստեղծումը փոխզիջում է՝ ելնելով ռեալ իրադրությունից: Եվ այսօր, հարկ է, որ ԼՂԻՄ-ում վերականգնվեն խորհրդային մարմինները, կուսակցության մարզկոմը և ժողովրդական դեպուտատների մարզային խորհուրդը, իսկ Հատուկ կառավարման կոմիտեն օժտվի այնպիսի իրավունքներով, որ ի վիճակի լինի ապահովել մարզի լրիվ ինքնուրույնությունը և ներկայությունը կենտրոնին:

Ս. ԱՎԱԳՅԱՆ
*Բանասիրական գիտությունների դոկտոր, Երևանի պետական համալսարանի ժուռնալիստիկայի ամբիոնի պրոֆեսոր*



# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

*Կուսակցության տնտեսական և սոցիալական ողջ քաղաքականությունը նպատակամղելով մարդու պահանջմունքների ու կարիքների բավարարմանը, ԽՄԿԿ XXVII համագումարը կարևորեց տնտեսագիտական օրենքների ու կատեգորիաների ճանաչման և գործադրման անհրաժեշտությունը ժողովրդական տնտեսության համակողմանի զարգացման և արտադրության արդյունավետության կտրուկ բարձրացման համար: Համագումարի, XIX համամիութենական կուսկոնֆերանսի և կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումներով խնդիր դրվեց ամենուրեք անհետաձգելիորեն ներդնել տնտեսության ղեկավարման տնտեսագիտական մեթոդները: Այդ գործին մի շահագրգիռ ավանդ է ՀԽՍՀ ԳԱ ակադեմիկոս Մ. Խ. Քոթանյանի «Գիտատեխնիկական հեղափոխությունը և տնտեսագիտական տեսությունը»* այժմեական ու հրատապ մենագրությունը, որը լույս է ընծայել «Հայաստան» հրատարակչությունը:*

*Գրքում հասարակական արտադրությունը քննվում է լայն իմաստով, որպես նյութական և հոգևոր բարիքների արտադրություն, այսինքն՝ որպես մարդու գոյության և զարգացման անհրաժեշտ պայման քննվում են ոչ միայն նյութական, այլև հոգևոր բարիքների արտադրությունն ու սպառումը, քանի որ, հեղինակի կարծիքով, մարդու, որպես հասարակական էակի, ձևավորման պրոցեսում որոշիչ նշանակություն է ունեցել նրա հոգևոր (մտավոր, մշակութային-տեխնիկական) զարգացումը: Այս դիրքերից էլ փորձ է արվում նորովի իմաստավորել որոշ տնտեսագիտական կատեգորիաներ և մեկնաբանել դրանց գործողությունը ժամանակակից պայմաններում:*

*Հեղինակը հանգամանորեն հետազոտում է արտադրության եղանակների զարգացման դիալեկտիկան, նոր մոտեցում է դրսևորում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների բնորոշմանը: Նա նշում է, որ մարդկության զարգացման այժմյան մակարդակի պայմաններում առանձնահատուկ գիտական հետաքրքրություն է հարուցում «արտադրողական ուժեր» կատեգորիայի բովանդակության սահմանումը: Շատ տնտեսագետներ ու փիլիսոփաներ հասարակության առաջընթացի, զարգացման և փոփոխության միակ վճռորոշ պայման են համարում նյութական արտադրության միջոցների կատարելագործումը և անտեսում հոգևոր արտադրության ու մարդու հոգևոր զարգացման դերը: Հեղինակի կարծիքով, այդպիսի մոտեցումը պարզունակ և անհամոզիչ է դարձնում հասարակության զարգացման պատմությունը: Նա հանգում է այն հետևության, որ արտադրողական ուժերը չէին կարող առաջադիմել (որը հաճախ հանգեցվում է սոսկ արտադրության միջոցների կատարելագործման) առանց մարդու մտավոր, հոգևոր աճի: Ընդգծելով այս մտքի կարևորությունը, հեղինակը եզրակացնում է. առաջին, մարդիկ ոչ միայն հիմնական արտադրողական ուժն են, այլև ամենաարագ զարգացող, փոփոխվող հեղափոխական տարրը արտադրողական ուժերի համակարգում: Երկրորդ, տնտեսական հարաբերությունները պետք է կառուցվեն այնպես, որ դրանց կենտրոնում գտնվի մարդը իր նյութական և հոգևոր պահանջմունքներով ու շահերով: Այսպիսով, «արտադրողական ուժերը մարդու ուժի (մտավոր ու ֆիզիկական) և տեխնիկական միջոցների ամբողջությունն է՝ գործողության մեջ դրված հասարակության ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր պահանջմունքների բավարարման համար» (էջ 21):*

*Ինչպես հայտնի է, արտադրական հարաբերությունները նյութական բարիքների արտադրության պրոցեսում մարդկանց որոշակի առնչություններն են: Դրանք այլ կերպ ընդունված է անվանել հասարակական, արտադրական կամ տնտեսական: Նմանօրինակ բնորոշումներ են տրվում մի շարք տնտեսագիտական աշխատություններում: Հեղինակը գտնում է, որ մարդիկ միմյանց հետ որոշակի հարաբերությունների մեջ են մտել նախ գոյության միջոցների հայթայթման համար, ապա՝ նյութական բարիքների արտադրության ոլորտում: Այստեղից հետևում է, որ, նախ, հասարակական-տնտեսական հարաբերություններն ավելի լայն ու ընդհանուր են, քան նյութական բարիքների արտադրության ժամանակ կազմավորվող հարաբերությունները և, երկրորդ, մարդկության*

* **М. Х. Котанян.** Научно-техническая революция и экономическая теория, Ереван, изд. «Айастан», 1988, 224 с.

էր կրում նաև Հայաստանում, որի զավակները, մեծ Հայրենականի առաջին իսկ օրերից նետվեցին թշնամու զրահապատ հորդաների դեմ:

Թբիլիսիի ռադիոդպրոցն ավարտելուց հետո հայորդին ուղարկվում է գործող բանակ: Հեղինակը համառոտակի պատմում է ռազմական գործողությունների, իր առաջին մարտական մկրտության մասին: Պատանին պատվով է բռնում 1942 թվականի ծանր կռիվների բռնությունը և շուտով արժանանում կառավարական պարգևի: Բայց հայտնի է նաև, որ այդ թվականին մեր զորքերը շարունակում էին նահանջել հակառակորդի գերազանցող ուժերի ճնշմամբ: Նահանջի այդ օրերին վիրավորված ռազմիկը հայտնվում է թշնամու օղակում, դրանից դուրս գալու բոլոր անհաջող փորձերից հետո՝ գերության մեջ: Այդ պահից նրան էլ են բաժին ընկնում այն վայրագ խոշտանգումները, որոնց ֆաշիստական դահիճները ենթարկում էին գերիներին համակենտրոնացման ճամբարներում, թե դրանցից դուրս:

«Մարդ № 50009» գիրքը հաստատում է հիտլերականների այդ բարբարոսական վարքագիծը, որի զինանոցում բազմազան էր հայտնի ավազակային «բարոյախոսությունը»՝ «նպատակը արդարացնում է միջոցները»:

Բացի համակենտրոնացման ճամբարների տառապյալներից, հայտնի է, որ 1944 թվականին, գերմանական արդյունաբերության՝ առավելապես ռազմական արդյունաբերության մեջ աշխատում էին զավթած երկրներից բռնի այստեղ բերված ավելի քան յոթուկես միլիոն բանվորներ ու ռազմագերիներ՝ լեհեր, չեխեր, սլովակներ, ֆրանսիացիներ, ԽՍՀՄ, Հարավսլավիայի և այլ քաղաքացիներ: Սրանց վիճակն անտանելի էր:

Գերիների նկատմամբ հիտլերականների բիրտ ու անագորույն վերաբերմունքը գրքում ներկայացված է իր բոլոր սարսափելի մանրամասներով: Այն գրվել է ոչ թե սոսկ դեպքերն ուսումնասիրող կամ ականատես անձի, այլ մահվան այդ կոմբինատների ամբողջ ողբերգությունն ապրած մարդու կողմից: Միայն զարմանալ կարելի է, որ քաղաքական կալանավորը, անցնելով Բուխենվալդի, Օսվենցիմի, Դորայի, Էլրիխի, Բերգեն-Բելզենի համակենտրոնացման ճամբարներով, երկուս ու կես տարի ենթարկվելով ֆիզիկական, բարոյական ու հոգեկան անլուր տանջանքների, ամենուրեք տեսնելով բազում մարդկանց խոշտանգումներ, կարողացել է պահպանել հոգու ու մտքի սթափությունը և տասնյակ տարիներ հետո այդ ամենին հաղորդակից դարձնել սերունդներին:

Մեզ թվում է, դրա պատճառներից մեկը ոչ միայն երիտասարդին հատուկ առողջությունը, ամեն տեսակ տառապանքներին ու զրկանքներին դիմադրելու կարողությունն էր, այլև հոգու մեծ ուժը, անսասան հավատը մեր արդար գործի՝ հաղթանակի նկատմամբ: Այդ հավատն էր, որ նույնիսկ համակենտրոնացման ճամբարի պայմաններում պայքարի վճռականություն էր հաղորդում բազմալեզու ու բազմահազար գերյալներին: Խոշտանգումներից ուշքի եկած գերմանացի կոմունիստ Ալֆրեդի, Թելմանի հավատարիմ ընկերոջ խորհուրդը իրեն շրջապատած ընկերներին հնչում է հրամանի ուժով. «Հզոր մի՛ ընկճվեք, մի՛ վախեցեք նույնիսկ մեռնելուց, պայքարեք մինչև վերջ, մինչև կախաղանի օղակը: Ոչ մի դժվարություն թող հետ չկանգնեցնի ձեզ արդար պայքարից: Մի բան իմացեք հաստատ, որ ռուս զինվորները շուտով բաց կանեն մեր դարպասները, ցավ չէ նույնիսկ մեռնել այդ գիտակցությամբ, չէ որ մարդիկ, որոնց ծառայում ենք մենք, կտեսնեն այդ լուսավոր օրը» (էջ 146—147): Չբավարարվելով այդքանով, նա հիշեցնում է Էռնեստ Թելմանի՝ անառարկելի հեղինակություն ու հարգանք վայելող այդ ղեկավարի, խոսքերը, որոնք Ալֆրեդի աներեր համոզմամբ պետք է որ խոր ազդեցություն ունենան, ամրապնդեն քաղաքական բանտարկյալների մարտական ոգին, նրանց միասնությունը, պայքարը շարունակելու կամքը:

Շատ տեղ կպահանջեր հիտլերյան համակենտրոնացման ճամբարների, մարդկանց տանջամահ անելու՝ այնտեղ ստեղծված միջոցների ու մեթոդների նկարագրությունը: Ընթերցողը տեղեկություններ է ստանում նաև կանանց համար հատուկ ստեղծված Ռավենսբրյուկ ճամբարի մասին. «որտեղ սպանելու նպատակով քշվածները փախչելու փորձ կատարելու ոչ մի հնար չեն ունեցել» (էջ 228): Ամենատարբեր տեղերից, իսկ 1942 թվականից սկսած նաև ԽՍՀՄ-ից, այստեղ են բերվել 132 հազար կանայք և երեխաներ, որոնցից 92 հազարն ամենավայրենի միջոցներով սպանվել է: Հատուկ համակենտրոնացման ճամբար էր ստեղծված և երեխաների համար:

Մեղմ կհնչեր, եթե ասեինք, որ ճամբարների վերաբերյալ տեղեկությունները ընթերցողի մեջ առաջ են բերում ծանր ու երկարատև ապրումներ: Դանթեի հանճարով ստեղծված երևակայական դժոխքի պատկերներն անգամ գունատվում են համակենտրոնացման ճամբարների իրականության հանդեպ: Գերիների նկատմամբ կիրառվում էին ոչ միայն ֆիզիկական խոշտանգումներ, նրանց զրկում էին անգամ իրենց անուններից՝ փոխարենը կրծքներին կախելով համարներ: Այդ ստորացուցիչ արարողությունները, որպես կանոն, ուղեկցվում էին լագերֆյուրերի ճառերով. «Դուք այսօրվանից ռայխի թշնամիներն եք, բայց, ինչպես տեսնում եք, ձեզ անմիջապես չենք ոչնչացնում, դուք ձեր մեղքերը քավելու համար պետք է աշխատեք հանուն մեծ Գերմանիայի: Դուք այսօրվանից մոռացեք ձեր անուն ազգանունը: Դուք ձեր անձը ներկայացնելու եք ձեր համարներով. վա՜յ նրան, ով չենթարկվի մեր



կարգ ու կանոնին: Այդպիսիների վերջը կախաղանն է: Հասկացա՞ք...» (էջ 85):

Արդեն 1939 թվականին Գերմանիայում ստեղծվեց հինգ համակենտրոնացման ճամբար, որոնց թիվը հետագայում աճեց, հասավ 22-ի՝ 2000 մասնաճյուղերով: Այդ ճամբարներում քշված 18 միլիոն գերիներից 11 միլիոնը ոչնչացվեց դիակիզարաններում, գազախցիկներում կամ բարբարոսային խոշտանգումներից: Նույն բախտին կարժանանային մնացածներն էլ, եթե Խորհրդային Միության և նրա դաշնակիցների բանակների հզոր հարվածներից գլուխները կորցրած հիտլերյան մարդասպաններն իրենց ոճրագործ պլաններն իրագործելու ժամանակ ունենային:

Դժվարագույն պայմաններում գերիները, առանձնապես քաղաքական կալանավորները, ամենատարբեր միջոցների էին դիմում՝ դուրս պրծնելու այդ դժոխքից, ներգրավվելու հիտլերականների դեմ ակտիվ գործողությունների, ստանում և տարածում էին անհրաժեշտ ինֆորմացիա, կատարելագործում ընդհատակյա պայքարի միջոցները:

Հակաֆաշիստական ուժերի համախմբման և հիտլերականների դեմ պայքարի կազմակերպման ու ծավալման գործում մեծ նշանակություն ունեցան գերմանական կոմկուսի ղեկավարության մանիֆեստը՝ ուղղված գերմանական ժողովրդին՝ դատապարտելու հիտլերականների կողմից հրահրված, երկիրը դեպի կործանումը տանող ավազակային պատերազմը, Մյունխենում 1943 թ. կազմակերպված «ռազմագերիների եղբայրական համագործակցություն» խմբի, ինչպես և ԽՍՀՄ-ում գերմանացի ռազմագերիների «Ազատ Գերմանիա» ազգային կոմիտեի գործունեությունը: 1942 թ. գեստապոյին հաջողվում է ջախջախել արդեն ստեղծված դիմադրության շարժման մի շարք խմբեր, բայց դրանք նորից ու նորից վերստեղծվում են «Ո՛չ դաժան տեռորը,— ասված է գրքում,— ո՛չ հիտլերյան շովինիստական պրոպագանդան չկարողացան խանգարել հակաֆաշիստական շարժման ընդարձակմանը, որը շարունակում էր աճել նաև համակենտրոնացման ճամբարներում» (էջ 111): Ֆաշիզմի դեմ միասնական զոհամարտում ուս-ուսի կռվում էին ամենատարբեր ազգերի զավակներ՝ դրսևորելով անձնազոհության ու սրտաշարժ բարեկամության օրինակներ: Ընթերցողին մոտ ու սիրելի են Ալֆրեդը, Արտավազդը, Բոգաչիկը, Գոգին, Ժոզեֆը, Նիկոլայը, Շալվան, Ստեֆանը, Վասյան...

Վերջապես, ծանր ապրումներից ու տառապանքներից հետո գալիս է ազատագրման բաղձալի օրը: Չես կարող անտարբեր անցնել այդ պահերի նկարագրությունների կողքով: Գերիներից շատերը նույնիսկ չեն դիմացել ուրախության ալիքին:

Ազատագրվելուց հետո հեղինակին նորից տեսնում ենք խորհրդային զորամասում ծառայելիս: Նա հնարավորություն ստացավ գերության մեջ մարտիկին բաժին ընկած տառապանքները, ծանր ապրումները համառոտակի արտացոլել նամակում՝ իր անմոռանալի ուսուցիչ Արուս Ոսկանյանին:

Գիրքն ավարտվում է հետպատերազմյան ժամանակաշրջանում հեղինակի կրկնակի այցով ԳԴՀ: Միանգամայն իրավացի է նա, երբ խոսում է անցյալից դասեր քաղելու, ժողովուրդների միջև բարեկամական փոխհարաբերություններ, մեր մոլորակում կայուն խաղաղություն հաստատելու մասին: Դրանք մեծ նշանակություն ունեն բոլոր երկրների համար այն պարզ պատճառով, որ, ինչպես նշել է Մ. Ս. Գորբաչովը, «... Ժամանակակից աշխարհը շատ փոքր ու փխրուն է դարձել պատերազմների և ուժային քաղաքականության համար: Այն փրկել ու պահպանել անհնար կլինի, եթե վճռականորեն ու անդառնալիորեն կապերը չխզվեն այնպիսի մտածելակերպի ու գործելակերպի հետ, որոնք դարերով կառուցվել են պատերազմի ու զինված կոնֆլիկտների ընդունելիության, թույլատրելիության վրա» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, «Հայաստան» հրատ., 1986, էջ 91):

Հեղինակն իր զայրույթի ձայնն է միացնում միլիոնավոր մարդկանց բողոքին՝ ընդդեմ գլուխ բարձրացրած ժամանակակից նեոֆաշիստական տարրերի ու կազմակերպությունների: Պատերազմի նկատմամբ հեղինակի աներկբա ժխտողական վերաբերմունքն արտահայտվում է գրքի առաջին իսկ տողերից:

Չի կարելի չնշել գրքում տեղ գտած մի սխալի մասին. հիշեցնելով, թե Հիտլերն ինչպես անցավ իշխանության գլուխ, հեղինակը շարունակում է. «Հենց այդ օրը դրվեց մարդկության *եղեռնի սկիզբը* (ընդգծ. իմն է Հ. Հ.), որը պետք է նախապատրաստվեր և իրականացվեր 8 տարի հետո» (էջ 79): Ճշտենք. Հիտլերը դեռևս 16 տարեկան էր և երազում էր նկարիչ դառնալ, երբ 1915 թվականին թուրքական կառավարող շրջանները իրականացրին դարաշրջանի *առաջին եղեռնը* հայ ժողովրդի նկատմամբ: Դա էլ հանդիսացավ ցեղասպանության՝ Հիտլերի մեծ դասը:

Հեղինակի խոստովանությամբ, ինքը չէր կարող չգրել խոհերում փայփայած այս գիրքը, թեկուզ և ուշացումով, քանզի դա իր և իր սերնդի կենսագրությունն է: Հիմնականում Հոկտեմբերյան հեղափոխության հասակակից այդ սերունդը ենթարկվեց պատմության դաժան փորձություններին. զրկանքների գնով վերականգնեց երկրի քայքայված տնտեսությունը, ապա աշխարհին ներկայացավ իր անխորտակ կամքով ու անվեհերությամբ, մասսայական հերոսությամբ՝ նենգ և ուժեղ թշնամու դեմ պատերազմում: Աշխարհի ողջ մարդկությունն իր փրկության համար պարտական է այդ սերըն-

դին, որի սխրանքը ընդմիշտ պետք է մնա ժողովուրդների հիշողության մեջ: Նշանակալից է և այն, որ հեղինակը այնքան տառապանքներ կրելուց հետո, ոչ մի չարություն չունի գերմանական ժողովրդի հանդեպ, ընդհակառակը, նա հարգանքով է խոսում համաշխարհային շատ մեծություններ տված այդ եռանդուն և կազմակերպված ժողովրդի մասին, որը վճռական դեր կարող է խաղալ ժամանակակից աշխարհի բարենորոգման, խաղաղության ամրապնդման համար մղվող պայքարում:

Գիրքն ընթերցվում է մեծ հետաքրքրությամբ: Այն կնպաստի հատկապես երիտասարդների հայրենասիրական, ինտերնացիոնալ դաստիարակությանը:

ՀՐԱՆՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
*պաշտոնաթող փոխգնդապետ*

# ԱՐԱԲԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԸ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

*1940—60-ական թվականներին համաշխարհային գաղութային սիստեմի փլուզման պրոցեսի արդյունքը եղավ տասնյակ ինքնուրույն պետությունների կազմավորումը: Հիշենք, որ ազգային-ազատագրական շարժումն ունեցել է վերելքի ու անկման տարիներ: Նախկին գաղութների ու կախյալ երկրների լիակատար քաղաքական-տնտեսական ազատագրման համար պայքարը կարևոր տեղ է գրավել այն ժամանակաշրջանի միջազգային հարաբերություններում, որի արձագանքները այսօր էլ դեռ լսվում են:*

*Գրախոսվող աշխատության* մեջ հետազոտվում է արաբական երկրների ազգային-ազատագրական շարժման հետաքրքիր փուլերից մեկը, երբ նրանք կոլեկտիվ պայքարի շրջանակներում փորձում էին հասնել քաղաքական անկախության՝ համաարաբական կազմակերպության՝ Արաբական պետությունների լիգայի (ԱՊԼ) ստեղծման ճանապարհով:*

*Շ. Կարամանուկյանի մենագրությունը հիմնված է հարուստ փաստական նյութի՝ ԱՊԼ-ի ծրագրային փաստաթղթերի, այդ կազմակերպության խորհրդի և քաղաքական կոմիտեի որոշումների, արխիվային նյութերի վրա: Քննադատորեն վերլուծվել և օգտագործվել են արտասահմանյան ու խորհրդային գրականությունը, մամուլը:*

*Առաջին գլխում՝ «Արաբական պետությունների լիգայի հիմնադրումը և ծրագրային փաստաթղթերը», հեղինակին հաջողվել է պատմական լայն ֆոնի վրա լուսաբանել երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին արաբական աշխարհում ստեղծված արտասովոր իրավիճակը և պարզաբանել համաարաբական կազմակերպության ստեղծմանը հանգեցրած դրդապատճառները: Նշելով արաբական տարբեր երկրներում քաղաքական իրավիճակի տարատեսակությունը, հետազոտողն ընդգծում է, որ, չնայած հակասություններին, արաբական պետությունները և ամենատարբեր ուղղությունների քաղաքական ուժերը միավորման միտում էին դրսևորում: Այս գլխում բացահայտվել են նաև համաարաբական միության ստեղծման ժամանակ՝ 40-ական թվականների սկզբին, Մեծ Բրիտանիայի դերն ու քաղաքական խուսանավումները, որոնք պայմանավորված էին արաբական միասնությունը (Մեծ Բրիտանիայի հովանու ներքո) օգտագործելով ռեգիոնում սեփական դիրքերի ամրապնդմանը հասնելու ձգտմամբ: Նշենք, որ տվյալ հարցում հեղինակը որոշ չափով թերագնահատել է Մերձավոր արևելքում նացիստական Գերմանիայի վարած քաղաքականության դերը, որը, մեր կարծիքով, Անգլիայի կողմից 1941—1943 թվականներին համաարաբական կազմակերպության ստեղծման գաղափարը պաշտպանելու վճռորոշ գործոններից մեկն էր:*

*Մանրամասնորեն վերլուծելով ԱՊԼ-ի ստեղծման նախապատմությունը, հեղինակն արդարացիորեն ընդգծում է, որ հիմնական խոչընդոտը հենց իրենց՝ արաբների միջև եղած սուր հակասություններն էին: Այդուհանդերձ, նրանց միջև բանակցությունների պրոցեսն ավարտվեց 1944 թ., սակայն այդ փուլում արդեն անգլիական կառավարությունը, գիտակցելով, որ համաարաբական կազմակերպության ստեղծումը կարող է հանգեցնել իր հսկողությունից մի շարք արաբական երկրների դուրս գալուն, սկսեց ամեն կերպ խոչընդոտել դրանց միավորմանը: Այդ ժամանակ բրիտանական կառավարող շրջաններին այլևս չէր անհանգստացնում ռեգիոնում Գերմանիայի ազդեցության ուժեղացման հնարավորությունը, քանի որ վերջինիս պարտությունը հաշված ամիսների հարց էր: Բայց կենտրոնամետ պրոցեսը անշրջելի բնույթ էր ստացել և ավարտվեց 1945 թ. մարտի 22-ին՝ Կահիրեում Արաբական պետությունների պակտի ստորագրումով:*

*Երկրորդ գլխում, անդրադառնալով արաբական երկրների ազգային անկախության ամրապնդման պայքարում ԱՊԼ-ի դերին, Շ. Կարամանուկյանը որպես ապացույց բերում է այն ծավալուն նյութերը, որոնք ցույց են տալիս միասնական ճակատով հանդես եկող արաբների ակտիվ փոխպաշտպանությունը: Նրանց միջև գոյություն ունեցող հակասություններով էր պայմանավորված ԱՊԼ-ի գործունեության անհամաչափ բնույթը այս կամ այն պատմական ժամանակաշրջանում. այդ հակասություններն էին արգելակում արաբական հակաիմպերիալիստական ուժերի համախմբման պրոցեսը: Սակայն հեղինակը նշում է, որ Լիգան էական ավանդ ներդրեց «Արևելյան բլոկ» ռազմաքաղաքական խմբավորման ստեղծմանն ուղղված Անգլիայի փորձերի ձախողման գործում:*

*50-ական թվականների սկզբին ԱՊԼ-ն, հանդես գալով ի պաշտպանություն ազգային անկախության համար Հյուսիսային Աֆրիկայի արաբական ժողովուրդների պայքարի (գլուխ 3-րդ), գործնականում ապացուցեց իր համաարաբական բնույթը. այն ժամանակ Մաղրիբի երկրները դեռևս Լիգայի անդամ չէին: Դրանով իսկ կազմակերպությունը ոչ միայն ընդլայնեց իր ազդեցության աշխարհագրությունը, այլև նպաստեց միջազգային ասպարեզում իր քաղաքական հեղինակության բարձրացմանը: Այս գլխում բացահայտված են այն իրական նպատակները, որոնց հետամուտ էին գաղութային տերությունները՝ Աֆրիկայի արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը ճնշելիս: Բացահայտված են նաև Մաղրիբը գաղութային կախվածության մեջ պահելու նրանց փորձերը:*

*Չորրորդ գլխում, որը վերնագրված է «Արաբական լիգան և Պաղեստինի հարցը», հեղինակն իր առջև խնդիր է դրել վերլուծել 40-ական թվականների երկրորդ կեսին պաղեստինյան իրադարձությունների նկատմամբ ԱՊԼ-ի դիրքորոշումը: Շ. Կարամանուկյանին ընդհանուր առմամբ հաջողվել է որոշակիացնել առաջին արաբա-իսրայելական պատերազմի ժամանակ (1948—1949 թթ.) Լիգայի գործունեության շարժառիթները՝ միաժամանակ ցույց տալով պաղեստինյան հարցում ԱՄՆ-ի և Անգլիայի քաղաքականությանը Լիգայի հակազդեցության էությունը: Այստեղ իրավացիորեն նշվում է, որ ԱՊԼ-ի անհաջողության պատճառներից մեկն այն էր, որ կազմակերպությունը գերագնահատեց արաբական գործոնի դերը Մերձավոր արևելքում արևմտյան տերությունների քաղաքականության ձևավորման պրոցեսում: Միաժամանակ չի կարելի չընդունել հեղինակի այն միտքը, որ պաղեստինյան հարցում առաջին հայացքից համաարաբական թվացող գծի պարտության մեջ նորից որոշակի դեր ունեցան Պաղեստինին սահմանակից արաբական պետությունների միջև եղած հակասությունն ու տարբեր ռազմաքաղաքական նպատակները: Հեղինակը տեղին է ընթերցողի ուշադրությունը սրում Հորդանանի զավթողական քաղաքականության բացասական դերի վրա, որը գրոյի հավասարեցրեց ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի 1947 թ. նոյեմբերի 29-ի 181 (11) բանաձևի համաձայն Պաղեստինում անկախ արաբական պետություն ստեղծելու Լիգայի փորձերը: Անկասկած, հենց Հորդանանի դիրքորոշումը և, ինչը հատուկ ընդգծում է պատմաբանը, մյուս արաբական երկրներին անհայտ հորդանանյան կառավարող շրջանների արտաքին քաղաքական ծրագիրը և վերջինիս հավանական համաձայնեցումը Իսրայելի գործողությունների հետ, 1948 թ. ռեգիոնում ստեղծեցին հակասությունների կծիկ ու հրահրեցին մինչև օրս չմարող արաբա-իսրայելական կոնֆլիկտը, որի արմատական հարցը Պաղեստինի պրոբլեմն է:*

*Մենագրության եզրափակիչ մասում Շ. Կարամանուկյանը, ամփոփելով արդյունքները, ընդգծում է արաբական երկրների համատեղ գործողությունների հարաճուն նշանակությունը նախկին գաղութային տերությունների դեմ նրանց հետագա պայքարում: Հակիրճ վերլուծելով Արաբական պետությունների լիգայի գործունեությունը 1960—1980 թթ., հետազոտողը նշում է, որ դիտարկվող ժամանակաշրջանում այդ կազմակերպության գործունեությունը միանշանակ չէր: Դրա հետ մեկտեղ նա ընդգծում է նաև ԱՊԼ-ի ազդեցության թուլացման որոշ օբյեկտիվ պատճառները, նշելով, որ արաբական երկրների սոցիալական բևեռացման պրոցեսի ակտիվացման, քաղաքական անկախություն նվաճելուց հետո ավելի բարդ և բնույթով ոչ միակերպ խնդիրների առաջացման, Լիգայի անդամ-երկրների քանակի ավելացման պայմաններում դժվարացել է գործողությունների կոորդինացումը մեկ կենտրոնից:*

*Իսկ արաբական երկրների համախմբմանը, ըստ հեղինակի, նպաստում են պաղեստինյան հարցում նրանց ջանքերի միավորումը, համատեղ գործողությունների անհրաժեշտությունը հրատապ սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում:*

*Շ. Կարամանուկյանի գիրքը, ցավոք, զուրկ չէ որոշ թերություններից: Այսպես, հեղինակը լռության է մատնում Արաբական պետությունների լիգայի վերաբերմունքը հետազոտվող ժամանակաշրջանում ԽՍՀՄ-ի մերձավորարևելյան քաղաքականության նկատմամբ: Միշտ չէ, որ հստակ ու օբյեկտիվ է լուսաբանվում Իսրայելի քաղաքականությունը:*

** Շ. Լ. Կարամանուկյան, Արաբական պետությունների լիգայի դերը արաբական երկրների հակաիմպերիալիստական պայքարում: ՀԽՍՀ ԳԱ հրատ., 1988, 204 էջ:*

Ընդհանուր առմամբ աշխատությունը գրված է գիտական բարձր մակարդակով։

Միջազգային հարաբերությունների զարգացման արդի փուլում, ինչպես Միավորված ազգերի կազմակերպությունում ունեցած իր ելույթում նշեց Մ. Ս. Գորբաչովը, տեղի է ունենում կենտրոնախույս ուժերի անթիվ բազմության նկատմամբ «համամարդկային գաղափարների առաջնայնության» պրոցեսը։ Զարգացած և զարգացող երկրների մեծամասնության միջև ընկած անդունդը, որը ինքնին համընդհանուր մասշտաբի լուրջ սպառնալիք է, պահանջում է արմատապես վերափոխել ստեղծված փակ կազմավորումներն ու անգամ պետությունների ռեգիոնալ ընկերակցությունները, որոնք, չնայած իրենց ունեցած նշանակությանը, ի վիճակի չեն արձակելու համաշխարհային տնտեսական կապերի հիմնական գծերի վրա գոյացած գլխավոր հանգույցները։ Մ. Ս. Գորբաչովը ՄԱԿ-ում նշում էր, որ «նոր իրողությունները փոխում են ամբողջ համաշխարհային իրադրությունը։ Թուլանում կամ սասանվում են անցյալից ժառանգություն մնացած տարբերություններն ու հակադրությունները։ Բայց երևան են գալիս նորերը։

Իմաստազրկվում են որոշ տարաձայնություններ ու վեճեր։ Դրանց տեղը գրավում են այլ կարգի կոնֆլիկտներ»։ Նոր իրողություններն այնպիսիք են, որ «միջազգային պրոցեսի նորմալ և կոնստրուկտիվ ընթացքն ապահովող երկխոսությունը աշխարհի բոլոր երկրների ու ռեգիոնների մշտական և ակտիվ մասնակցության կարիքն ունի»։ Տվյալ դեպքում, խոսելով այնպիսի ռեգիոնալ կազմակերպության գործունեության մասին, ինչպիսին Արաբական պետությունների լիգան է, որը միավորում է 21 պետություն և Պաղեստինի ազատագրման կազմակերպությունը, ընդգրկում Հյուսիսային Աֆրիկան ու Արաբական Արևելքը, նկատենք, որ 80-ական թվականների վերջին այն հեռացել է խիստ առճակատման ուղուց ու նպաստել փոխզիջման հիմքի վրա ռեգիոնում քաղաքական կլիմայի մեղմացմանը՝ ճանաչելով Իսրայելի գոյության իրավունքը։

Շ. Կարամանուկյանի մենագրությունը լուրջ ներդրում է խորհրդահայ քաղաքական արաբագիտության մեջ։

Ա. ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ
ՀԽՍՀ ԳԱ արևելագիտության ինստիտուտի
ավագ գիտաշխատող



«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 8, 1989 թ.: Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։

Հանձնվել է շարվելու 14. 07. 89 թ.: Ստորագրվել է տպագրելու 18. 08. 89 թ.: ՎՖ 06157: Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Թուղթ՝ տպագրական № 2: Օֆսեթ տպագրություն: 8,4 պայմանական տպագրական մամուլ: 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ: Տպաքանակը՝ 12 232: Պատվեր № 955: Գինը՝ 25 կոպ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.